ՀՈՒՆՎԱՐ
№ 1 1963 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՀՐԱՇԱԼԻ ՆԿԱՐԸ

Վ. ԴԱՎԹՅԱՆ

Ո՞վ է արել,
Ո՞վ է արել,
Մեր սենյակի լուսամուտին
Ո՞վ է նկարն այս նկարել...
Նկարի մեջ՝ ճերմակ ծառեր,
Նկարի մեջ՝ ձյունոտ սարեր,
Իսկ սարի տակ,
Անտառի տակ՝
Սառույց կապած
Մի լուռ գետակ:
Իսկ գետակից մի քիչ հեռու
Վիզը բարակ մի եղջերու
Կարծես կանգնել,
Ինձ է նայում:
Իսկ անտառում,
Թփերի տակ
Կուչ է եկել
Մի նապաստակ,
Գուցե խաբել քաջ որսորդին,
Մտել է նա այս թփի տակ
Ու փրկել է փափուկ մորթին...
Հրաշալի, սիրուն նկար,
Բայց նկարն այս երեկ չկար:
Ո՞վ է արել,
Ո՞վ է արել,
Մեր սենյակի լուսամուտին
Ո՞վ է նկարն այս նկարել:




Ն. ԹԱԹԻԿՅԱՆ

Մի անգամ, այնպես պատահեց, որ մի տղա ինքն իրեն շաղլակած, հևասպառ վազեց, վազեց... Բայց ովքեր չգիտեն, թե բանն ինչումն է, նրանց կարող է թվալ, թե մեր ասածը փչոց է: Կարող են մտաբերել, թե ինչպես նշանավոր Մյունխհաուզենը հավատացնում էր, որ ինքն իր մազերից բռնած՝ ճահճի միջից քաշել հանել է թե՛ իրեն և թե՛ իր ձիուն: Կարող են մտածել, որ մեր պատմածն էլ այդպիսի մի բան է: Բայց իզուր. այդ տղան իրական է, մինչդեռ նշանավոր Մյունխհաուզենը, ո՞վ է իմանում, եղե՞լ է, թե՞ ոչ: Տըղայի անունն էլ շատ սովորական անուն է. Գառնիկ: Եվ ոչ թե ինչ-որ բարոն...

Դե, ուրեմն, լսեցե՛ք, թե ինչպես է բանը պատահել:

... Քի՞չ աղջիկներ կան, որ ամենաճարպիկ տըղայից էլ ճարպիկ են, որ քաջ են, համարձակ, ուժեղ: Իսկ երբեմն պատահում են այնպիսի տըղաներ, որոնք... Դե, ինչպե՞ս ասեմ... ծույլ են, անհամարձակ, դանդաղաշարժ, անճարակ... Նշանակում է, բանը բոլորովին էլ նրանում չէ, թե այսինչը աղջիկ է, այնինչը՝ տղա: Այս խոսքերի համար գուցե որոշ տղաներ մեզանից նեղանան, բայց թող նրանք չշտապեն: Ես առանց փաստի չեմ խոսի:

Այ, օրինակի համար, Գառնիկը ու նրա ընկերուհին՝ Սաթիկը: Դե, ասենք, ի՞նչ ընկերության մասին կարող է այստեղ խոսք լինել: Շատ էլ որ նրանք հարևան են, շատ էլ որ ամեն օր միասին են դպրոց գնում: Ընկերները գոնե ինչ-որ գծերով

իրար նման պետք է լինեն: Բայց նրանք բոլորովին չէին նմանվում: Այնքան, որ մարդիկ ասում էին. Գառնիկը պետք է աղջիկ լիներ, իսկ Սաթիկը՝ տղա: Ա՛յ, այդ մարդկանց ասածների համար աղջիկներն իսկապես որ իրավունք ունեն նեղանալու:

Դե լավ, պատմենք, թե դեպքն ինչպես է եղել և թե ինչպես այդ նույն Գառնիկը ինքն իրեն շալակած վազել է:

Մի անգամ դպրոցում ընկերները Գառնիկին շատ նեղեցին.

— Դու մեր գլխին փորձանք ես,— ասացին նրան:

— Քո պատճառով ամեն տեսակետից խայտառակվում ենք,— ասաց ընկերներից մեկը:

— Միայն դու ունես այս քառորդում «երկուս»,— ասաց երկրորդը:

— Այն էլ՝ միանգամից երկու հատ,— վրա բերեց երրորդը:

— Ամեն ինչումն ես այդպես, նույնիսկ ֆիզկուլտուրայում,— բարկացած հայտարարեց մեկ ուրիշը:

Սաթիկն այստեղ միջամտեց: Նա զայրացած կանգնեց Գառնիկի կողքին ու գոռաց ընկերների վրա.

— Ի՞նչ եք վրա տվել մարդուն,— ասաց նա:— Գառնիկի համար դժվար է, նա չի կարողանում, իսկ դուք էլ... Իսկ մենք էլ նրան բոլորովին չենք օգնում: Չենք օգնել, չենք օգնել, իսկ հիմա, երբ տարին արդեն վերջանում է, հարձակվում եք խեղճի վրա...

Սաթիկն այնքան տաքացած էր խոսում, ընկերներն էլ այնպես լավ գիտեին նրա համառ բնավորությունը, որ ձեն քաշեցին: Միայն մեկը դժգոհությամբ ասաց.

— Ընկերդ է, պաշտպանում ես: Այդ բոլորովին էլ լավություն անել չի:

Այսպես ասողը Վարդգեսն էր: Դե նրա համար ի՞նչ, նա գերազանցիկ է, ամեն ինչ նրան հեշտությամբ է հաջողվում... Այսպես էր մտածում Գառնիկը: Բայց Սաթիկը Վարդգեսին էլ շատ լավ պատասխանեց:

Սաթիկը միայն անտեղի պաշտպանելով չէր, որ ցույց էր տալիս իր ընկերությունը, նա միշտ փորձում էր Գառնիկին օգնել, բացատրել նրա չհասկացած դասերը: Բայց դե...

— Ախր, ի՞նչ կա այստեղ չհասկանալու,— ասում էր նա:— Դու պատկերացրու, որ խոսքն այս խնդրում ոչ թե թվերի մասին է, այլ, ասենք, խնձձորների: Դու ունես հննսուննույթ խնձոր...

Գառնիկին այդ բոլորը տեղ չէր հասնում, որովհետև նա այդ միջոցին մտածում էր այն խնձորների մասին, որ մի քանի օր առաջ մայրն էր բերել շուկայից:

— Հասկացա՞ր,— հարցնում էր Սաթիկը,— հիմա փորձիր լուծել:

— Չեմ կարող,— անմիջապես խեղճացած խոստովանում էր տղան:



Վերջում Սաթիկը իսկապես որ բոլորովին էլ իսկական ընկերոջ նման չէր վարվում, որովհետև թույլ էր տալիս, որ Գառնիկը ոչ թե հասկանալով լուծի, այլ իր տետրից արտագրի:

— Գոնե ճիշտ արտագրիր,— բարկանում էր նա:

— Եթե ճիշտ արտագրեմ, ո՞վ կհավատա, որ ես եմ լուծել,— խեղճ-խեղճ պատասխանում էր Գառնիկը:— Ես այնքան սխալ եմ անում, որ գոնե մի «երեք» ստանամ:

Ա՛յ, այսպիսի տղա էր Գառնիկը: Ինչ գործ լիներ, նա անմիջապես ասում էր իր սովորական «չեմ կարող»-ը, այնպես որ արդեն բոլորը գիտեին, որ նա անճարակի մեկն է և ամեն առիթով նրա մասին ասում էին՝ «նա չի կարող»...

Տարվա վերջին էլ պարզվեց, որ նա չի կարող դասարանը փոխել: Ո՞վ թույլ կտար, որ նա երկու հատ «երկուս»-ով փոխադրվեր, իսկ աշնանային աշխատա՞նք: Պարզ է, որ ամենքը միաբերան այն կարծիքին էին, որ նա չի կարող երկու առարկայից ամռանը պատրաստվել:





Տարին վերջացավ։ Արձակուրդների ընթացքում երեխաներից ոմանք մնացին քաղաքում։ Սաթիկն ու Գառնիկն էլ մնացին։ Գառնիկը, պետք է ասել, որ սիրում էր գիրք կարդալ։ Քանի որ չէր էլ մտածում աշնանային աշխատանքները հանձնելու մասին, ինչքան ասես ազատ ժամանակ ուներ։ Մի անգամ նա մի գիրք կարդաց, ուր խոսվում էր տղայի և աղջկա իսկական, լավ ընկերության մասին։ Գիրքը շատ դուր եկավ նրան, տվեց, որ Սաթիկն էլ կարդա, իսկ հետո նրանք ընկերության մասին խոսեցին։

— Տեսնու՞մ ես, — ուրախացած ասաց Գառնիկը, — լավ ընկերություն կարող են անել ոչ միայն տղան՝ տղայի, աղջիկը աղջկա հետ, այլև տղան ու աղջիկը։ Ինչպես մենք...

Բայց այստեղ Սաթիկը զարմացած նրան նայեց։

— Ինչպես մե՞նք, — ասաց նա։ — Մենք ի՞նչ ընկերներ ենք որ...

Գառնիկը շվարեց։

— Բա ի՞նչ ենք, — հարցրեց նա։

— Ի՞նչ ենք... մի դասարանցի ենք, հարևան ենք, իսկ հիմա մի դասարանցի էլ չենք լինի...

Գառնիկը նեղացած շրջվեց, որ աղջկանից հեռանա։

— Սպասի՛ր, — ասաց նրան Սաթիկը, — դու ինչո՞ւ էիր կարծում, թե մենք ընկերներ ենք։ Դու ինչպե՞ս ես հասկանում ընկերությունը։

— Ե՞ս, — Գառնիկը մեկ ուզեց թողնել հեռանալ, մեկ էլ, այնուամենայնիվ, ասաց.

— Դե, օրինակ... բա ինչո՞ւ էիր ինձ պաշտպանում, փորձում օգնել, երբ...

Սաթիկի աչքերը փայլեցին.

— Ես քեզ խղճում էի, դրա համար։ Ուղղակի խղճում էի։ Իսկ կարելի՞ է խղճալով ընկերություն անել։ Ես ընկերություն կարող եմ անել այնպիսի մարդկանց հետ, որոնց հավանում եմ, որոնք լավն են։ Այ օրինակ...

Սաթիկն այստեղ իրենց դասարանից մի քանի հոգու անուն տվեց, որոնցից մեկն այն Վարդգեսն էր, որի վրա նա մի անգամ հարձակվել էր, պաշտպանելով Գառնիկին...

— Համ էլ, — շարունակեց Սաթիկը, — այսպես որ շարունակվի, դու ինչքա՞ն ետ կմնաս ինձանից։ Ասենք, եկող տարի մի կերպ փոխադրվես, հետո էլի՛ մնաս, հետո էլի՛... Հապա մտածիր...

Գառնիկն այդ օրը շատ կոտրված բաժանվեց Սաթիկից։ Հիմա նրա համար շատ բան պարզվեց. նա համոզված էր, որ աղջիկն իրեն ամեն ինչ ճիշտ ասաց. ախր, նա բավական գրքեր էր կարդացել ու գիտեր, որ իսկապես խղճալով մարդիկ ընկերություն չեն կարողանա անել։

Գոնե Սաթիկի հետ հարևան չլինեին։ Օրը մի քանի անգամ, ուզեր-չուզեր, հանդիպում էր նրան, և ամեն հանդիպելիս աղջկա ասածների ազդեցությունը նորոգվում էր, և նրա հոգում խորանում էր վիրավորանքը։

Բայց ումի՞ց պետք է վիրավորվեր։ Կարելի՞ էր ճիշտ խոսքի համար վիրավորվել։

Իսկ նա իրեն ու Սաթիկին լավ ընկեր էր համարում...

* * *

Ամռան հիանալի օրեր են։ Լավ է նրանց համար, ովքեր թռչունի նման ազատ են։ Ինչե՜ր ասես, որ չեն կարող անել։ Ջրոսնել, խաղալ, լողալ, հենց այնպես պարապ թափառել բնության գրկում... Բայց մի տղա աշխատում է այդպիսի մտքերը գլխից հեռացնել։ Աշխատում է ինքն իրեն



Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

թույլ չտալ հրապուրվել։ Հակառակի նման էլ ամեն բան այնքան դժվար է նրան հաջողվում։ Ջվազի՞ Սաթիկին խնդրի, որ այս դասը բացատրի, օգնի իրեն... Բայց նա այդ մտքից էլ է հրաժարվում, ինչպես հրաժարվել է քիչ առաջ դրսում գնդակ խաղալու հաճույքից։ Ոչ՛, չի կարողանում, ո՛չ մի կերպ չի կարողանում այս խնդիրը լուծել... Բայց շարունակում է սեղանի առաջ համառորեն նստել։ Մինչև չլուծի, միևնույն է, չի վեր կենա։ Հարկավոր է կենտրոնանալ, խանգարող բոլոր մտքերը հանել գլխից։ Մեկ-մեկ բոլորովին հուսահատվում է։ Ոչ՛, չի կարողանա։ Տարվա ընթացքում, երբ ամեն անգամ քիչ-քիչ էին սովորում, երբ դասատուն բացատրում էր, Սաթիկն օգնում, չէր կարողանում, իսկ հիմա՞... Բայց այն ժամանակ ինքը շարունակ կաչված էր լինում այն

*մտքին, թե չի կարողանա։ Իսկ հիմա նա հասկացել էր մի զարմանալի ճշմարտություն՝ «Չեմ կարող»-ը կարգին մարդու համար չպետք է գոյություն ունենա։ Մի անգամից չի՞ հասկանում, ոչինչ, կփորձի երկրորդ անգամ, երրորդ անգամ, տասներորդ անգամ...*

* * *

*Մի տղա ինքն իրեն շալակած վազում էր, վազում... Վազում էր, որ կարողանա անցնել այն ճանապարհը, որ իր ընկերները անցել են երկար ամիսների համառ աշխատանքով, համբերությամբ։ Իսկ ինքը վազում էր, որովհետև քիչ ժամանակ ուներ։ Այդ տղան Գառնիկն էր։ Ասում եք, ինչպե՞ս թե, ինքն իրեն շալակա՞ծ... Հապա մտածեցեք։ Կարճ ժամանակում նա պետք է անցներ մի ճանապարհ՝ ուսերին կրելով մի մեծ ծանրություն, որն առաջացել էր իր բնավորության հասցրած վնասներից։ Նա ծանրությունից տնքալով, հևասպառ ուսերին տանում էր իր բնավորությունը։ Ամեն մարդու բնավորությունը նա ինքն է։ Ուրեմն, տեսնու՞մ եք, խոսքը այստեղ մի նոր Մյունխհաուզենի մասին չէ, այլ սովորական մի տղայի մասին։*

*Սովորական մի տղայի, որը շատ-շատ ետ մնալուց հետո, ինքն իրեն շալակեց ու կարողացավ հասնել ընկերներին։*

*Եվ իսկապես նա հասավ։*

*Նա ու Սաթիկը նորից իրար հետ են դպրոց գնում։ Միասին մի դասարանում են նստում։*

*Գառնիկը ամեն կերպ աշխատում է չմոռանալ անցյալը. նա չի կարող մոռանալ, թե ինչքան դժվար է լինում անցնել մի ճանապարհ, երբ ետ ես մնացել ընկերներից։*

*Ընկերներից...*

*Իսկ ընկերության մասին նա Սաթիկի հետ չի խոսում։ Իսկական ընկերները երբեք կարիք չեն ունենում խոսելու այն մասին, թե իրենք ինչպիսի ընկերներ են...*

# ՀԱՅՐԻԿ, ԵՍ ԹՄԲԿԱՀԱՐ ԵՄ

Գ. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Իրար նման են։ Հայրը որդու շարունակությունն է, որդին՝ հոր անցյալը։ Եվ եթե հայրը որդու մեջ տեսնում է իր մանկությունն ու թախիծով, կարոտով հիշում, տղան հոր մեջ տեսնում է իր ապագան, որին անհամբերությամբ ձգտում է հասնել։

Թախտի վրա նստած, կկոցած աչքերով հայրը նայում է որդուն, նայում ու հիշում, տղան հոր առաջ կանգնած, հուզմունքից կարմրած ու փայլատակած, պատմում է.

— Գիտե՞ս հայրիկ, ես թմբկահար եմ։

* * *

Եվ այդ մի խոսքը հորը խլում է ներկայից, խլում ու նետում հեռավոր անցյալի, արդեն մշուշված անցյալի գիրկը, որտեղ ամեն ինչ պայծառ է, որովհետև մանկություն է։ Իսկ մանկությունը ամեն ինչ է մի մարդու համար, որ կորցրել է այն։ Մի՞թե այդպես չէ։

Որդին պատմում է հորը.

— Հայրի՛կ, մեր ջոկատավարը այսօր կանչեց ինձ, թմբուկը ձեռքս տվեց ու ասաց. «Դու ջոկատի թմբկահարն ես»։ Այնքան լա՜վ է, հայրիկ, այնքան լա՜վ...

Եվ նա պատմում է մանրամասնություններ, որոնք բոլորն էլ այնքան կարևոր են տղայի համար, որոնք նույնքան կարևոր պետք է լինեն նաև հոր համար։

— Առաջին անգամ ես չգիտեի ինչպես պետք է խփեմ։ Կաշին ցավեցնում էր ուսս։ Եվ չկարծես, որ թեթև է. ես էլ էի այդպես կարծում, բայց այնքան ծանր է, նույնիսկ փայտիկները՝ ծանր են, ձեռքդ հոգնում է։

Եվ որդին շարունակում է պատմել, պատմել, պատմել։

Հայրը ուշադիր լսում է նրան։ Հայրը լսում է և կարծես մի պահ տեսնում է որդուն Երևանի փողոցներում ու հրապարակներում՝ թմբուկը ուսից կախված, ջոկատի առջևով քայլելիս ու հպարտ թմբուկին հարվածելիս։

Հայրը կկոցած աչքերով նայում է իր հպարտ որդուն, իր անցյալին, որտեղ դանդաղորեն տեղ է բացվում մի ուրիշ տղայի համար։ Այդ տղան նույն աչքերն ունի, բայց և տարբեր է, նույն հասակն



ունի, բայց և տարբեր է, նույն երջանկությունն ունի, բայց և տարբեր է:

Փողոցով անցնող երեխաների խումբն էլ նման է պիոներական ջոկատի, բայց և տարբեր է: Իսկ այդ փողոցը նեղ է, ծուռումուռ, հին քաղաքի, շատ հին քաղաքի փողոց:

Այդ քաղաքը կոչվում է Դամասկոս:

Գրքերը հրաշք-հեքիաթներ են պատմում այդ քաղաքի մասին: Սուլթաններ ու հուրի-փերիներ են ապրել այդ քաղաքում: Դրախտի թռչուններն են երգել նրա ընդարձակ այգիներում: Արաբական ամբողջ գրականության մեջ «դրախտ» բառը հոմանիշ է օգտագործվել Դամասկոսին: Հավանաբար այդպես եղել է. գուցե այդպես էր նաև երեսուն տարի առաջ, բայց այդ տարիներից նա հիշում է մի նեղ փողոց, սանդուղքի տակ՝ առանց լուսամուտի մի փոքր սենյակ, դրան առաջ՝ մոր կարի մեքենան, իսկ անկյունում՝ հիվանդ պառկած հորը:

Այդ հիվանդն ու այս պիոները շատ նման են իրար: Աչքերից արձակված նույն բոցերը, նույն սեղմված շրթունքները, նույն լայն, պայծառ ճակատը: Եվ քրտինքի կաթիլներ երկու ճակատների վրա. հիվանդության քրտինքը՝ հեռավոր անցյալում, հափշտակության, երջանկության քրտինքը՝ այժմ իր դիմաց: Եվ այդ երկուսի արանքում՝ ինքը, այդ ժամանակ զարմանալիորեն նույնքան պատանի, ինչպես իր տղան, վազում է ծուռումուռ փողոցներով, դեպի տուն:

— Հայրի՛կ, հայրի՛կ,—կանչում է նա դեռ բակից ու, դռնից ներս խուժելով, վազում հոր անկողնու մոտ:

Հիվանդը բարձրացնում է գլուխը:

— Հայրի՛կ, —շնչասպառ շտապում է տղան,— հայրի՛կ, ես թմբկահար եմ: Այսօր պարոն Լեոնը կանչեց ինձ և ասաց՝ «Դու կլինես մեր թմբկահարը»:

«Մի՞թե կարող է այդքան ճշգրտությամբ կրկնվել պատմությունը»—թախտի վրա նստած, կկոցած աչքերով նայելով իր որդուն, մտածում է հայրը:

Եվ նորից երկու դեմքեր խառնվում են իրար: Ինքը և իր որդին: Այնքան նման իրար և այնքան տարբեր: Երկու թմբկահարներ, երեսուն տարվա տարբերություն իրար մեջ, սակայն երկու թմբկահարներ: Հայրը և որդին:

— Իսկ թմբուկդ որտե՞ղ է, —հայրը հանկարծ բացում է աչքերը, ուղղվում թախտի վրա:

— Բերել եմ, բայց վախեցա, որ աղմուկի համար բարկանաս:

Հայրը ժպտում է, շոյում որդու գլուխը:

— Բեր այստեղ, —ասում է նա, — բեր այստեղ, ի՞նչ աղմուկ:

Տղան զարմացած նայում է հորը, հայրը զարմացած նայում է որդուն:

Եվ երկուսն էլ չգիտեն, թե այդ պահին նման են իրար հասակով, ապրումներով, հուզումով, ցանկությամբ:

Տղան վազում է մյուս սենյակը և անմիջապես վերադառնում թմբուկի հետ:

Հոր հայացքը պայծառ է: Նա ձեռքը մեկնում է պատանեկան հափշտակությամբ, մի կերպ անց է կացնում ուսից, վերցնում փայտիկներն ու խփում:

— Թա՛մ, թա՛մ, թա՛մ:

Տղան նայում է հորը, ժպտում: Հայրը շարունակում է.

— Թա՛մ, թա՛մ, թա՛մ, թա՛մ, թա՛մ, թա՛մ, թա՛մ, թա՛մ, թա՛մ...

Հետո հիշողությունը զարմանալի արագությամբ երեսուն տարիների, բազմաթիվ վշտերի ու ուրախությունների, անթիվ հուզումների արանքից գտնում, հանում է այն ամենը, ինչ վերաբերում է այդ տարիների իր ապրումներին, գիտելիքներին, հու-

զումներին: Եվ հոր մատները թմբուկին խփում են այն տարիների վճռականությամբ ու վարպետությամբ, որով անցնում էր նա Դամասկոսի նեղ, ծուռումուռ փողոցներով՝ առանց ետ նայելու, բայց հետևից եկող ամբողջ մի խմբի համաչափ ու հըպարտ քայլվածքի գիտակցությամբ:

— Թա՛մ, թամա՛մ, թա՛մ, թաթաթաթա՛մ, թա՛մ, թաթա՛մ, թա՛մ, թաթաթաթա՛մ:

Եվ ի՞նչ: Մանկության վերադա՞րձ է այդ, թե՞ մանկանալո՞ւ, իր որդու տարիքն ունենալու խենթ ցանկություն: Թմբուկի հարվածների տակ հայրը քայլում է սենյակում, իսկ որդին՝ նրա հետևից, նույն ռիթմով հետևում է:

Նրանք քայլում են ուրախ, երջանիկ, կարծես նույն տարիքի լինեն:

Ինքնամոռաց, խելահեղ խփում է հայրը՝ մոռացած ամեն ինչ, մանկացած՝ առաջվա նման: Այդ պահին նրա ուղեղում ոչ մի բան հստակ չէ: Հստակ չէ նույնիսկ, թե ով է ինքը՝ իր որդի՞ն, թե՞ այդ որդու հայրը: Չքացած է երեսուն տարվա տարբերությունը, չքացած է ամեն ինչ:

Կա միայն սենյակը՝ լցված թմբուկի հմայիչ, առույգ ձայնով, և հետևից եկող ամբողջ խումբը: Նա հստակ չգիտի՝ փողոցներում ժպտացողները արաբնե՞ր են, թե՞ հայեր, Դամասկո՞ւմն է, թե՞ Երևանում:

Հստակ է միայն մի բան: Մի շատ կարևոր բան: Ինքը նորից թմբկահար է: Ի՞նքն է այդ, թե՞ իր տղան: Մի՞թե նույնը չէ: Չէ՞ որ ամենակարևորը այն է, որ հնչի թմբուկը, իր ձայնով լցնի շրջապատը, մարդկանց հոգիները:

Հնչում է թմբուկը և կարևոր չէ, թե ով ում պիտի սափ քիչ հետո.

— Հայրի՛կ, ես թմբկահար եմ:

Կարևորը թմբկահարն է, որ կա ու կլինի:







Նկ. Վ. ԲԱՍՏԻԿՈՎԱՅԻ

## ԱՆԻՎՆԵՐԻ ԵՐԳԸ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Փողո՛ցներում, ճամփաներում
Անիվներն են միշտ դեգերում,
Զրնգում են երգով հզոր,
Սլանում են գիշեր ու զոր:
Ու ես սափ անիվներին,
Վազում եք դուք
Ամբողջ տարին՝
Ճամփաներին
Ողջույն տալով,
Դրնգալով,
Զրնգալով:
Գնում եք ու անվերջ գալիս,
Ցերեկ լինի, թե իրիկուն,
Գեթ մի վայրկյան դուք չեք տալիս
Ճամփաներին հանգիստ ու քուն:
Հնչում է միշտ ձեր երգերի
Արձագանքը դաշտ ու սարում,
Ձեր անդադար պտույտներից
Երբեք, երբեք չե՞ք բեզարում: —
Անիվները արագավազ
Զրնգացին զվարթ ու գիլ,
Ու երգելով սափն.

— Տղա՛ս,

Մենք ընկերն ենք քո երազի:
Թեկուզ լինի ճամփան մեր նեղ,
Թեկուզ լինի ձյուն ու ձնհալ,
Մենք թռչում ենք դեպի այնտեղ,
Ուր կարող ես մտքով գնալ:
Մեզ կանչում են, կանչում շտապ
Երկրի ամէն, ամեն մասից,
Ու վազում ենք այսպես արագ,
Որ ետ չընկնենք քո երազից:

# Փոքր չարաճճին

Ռ. ՇԻՐՈՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ես հիվանդանոց ընկա: Դա անցյալ տարվա սեպտեմբերին էր: Քթանցքներս ուժեղ բռնվել էին, և ես դժվարությամբ էի շնչում: Բժիշկներն ասացին, որ լորձաթաղանթի բարորակ ուռուցք է, պետք է հեռացնել: Որքան շուտ, այնքան լավ: Ուրիշ բուժում չկա:

Հիվանդանոցը, ուր ես գնացի, երկհարկանի մի շենք էր, ծառապատ բակում: Ուրիշ շենքեր էլ կային. մեծ ու փոքր, բոլորն էլ հիվանդանոցներ էին:

Ինձ տարան առաջին հարկի հիվանդասենյակներից մեկը, որտեղ չորս մահճակալ էր դրված: Սենյակը թեև փոքր էր, բայց շատ լուսավոր: Դիմացի լայն պատուհանից առատ լույս էր թափվում: Ես մեկ-մեկ նայեցի պառկածներին, մտածելով, թե գուցե ծանոթներ լինեն: Ոչ մի ծանոթ: Բոլորն էլ դպրոցական հասակի երեխաներ էին: Մի պահ թվաց, թե ինձ սխալմամբ են այստեղ բերել: Բայց ոչ: Ուղեկցող քույրը կարգի բերելով ազատ մահճակալը, դարձավ ինձ.

— Սա ձեր տեղն է, կարող եք զբաղեցնել. բժիշկը ձեզ կնայի վաղը, այսօր արդեն ուշ է:

Ես նկատեցի, որ իմ կողքի մահճակալին պառկածը ամենից փոքրն է, մոտ ութ տարեկան, խոշոր, սև-սև աչքերով մի տղա: Երբ ուղեկցող քույրը հեռացավ, նա իսկույն նստեց անկողնու մեջ և, թեքվելով դեպի ինձ, հարցրեց.

— Քեռի՛, քի՞թ ես, թե՞ կոկորդ:

— Քիթ:

— Ես էլ եմ քիթ:

— Իսկ սրա՞նք,— գլխով անելով մյուսներին՝ հարցրի ես:

— Կոկորդ են:

— Երկու քիթ, երկու կոկորդ,— լավ ընկերախումբ է,— ավելացրի ես:

Տղան ուրախ ժպտաց ու լռեց: Ես թիկն տվեցի բարձին և զբաղվեցի օրվա թերթերով, որ հետս էի բերել: Տղան շարունակում էր զննել ինձ ոտից-գլուխ: Ես նկատեցի, որ անհանգիստ է, էլի ինչ-որ բան է ուզում ասել, բայց, երևի, ամաչում է: Ես առիթ տվի.

— Անունդ ի՞նչ է, փոքրի՛կ:

— Ալբես,— աշխույժ վրա բերեց նա:

— Լավ անուն է:

— Տատիկս է դրել:

— Խելացի տատիկ է քո տատիկը:

Նա շատ շոյված զգաց իրեն, չգիտեմ, տատիկի՞, թե՞ անվան համար, և ապա լուռ հայացքն ուղղեց առաստաղին:

Մենք սկսեցինք մտերմանալ: Մանկական անկեղծությամբ և անմիջականությամբ Ալբեսն ինձ հետ բաժանում էր իր ուրախություններն ու վիշտը, իր մտքերն ու ապրումները: Հաճախ հիշում էր մորը, տատիկին, քույրերին, որոնք ապրում էին հեռավոր մի գյուղում, կապույտ լճի ափին:

Ալբեսը հետաքրքրասեր և շրջահայաց տղա էր: Մի քանի օր էր, ինչ հիվանդանոց էր եկել, բայց ամեն ինչին տեղյակ էր: Գիտեր բոլոր բժիշկների ու քույրերի անունները և իր կարծիքն



ուներ նրանց մասին: Ովքեր խստապահանջ էին, նրանք վատ էին, ովքեր Ալբեսի չարությունները հանդուրժում էին՝ լավ էին: Բայց ընդհանրապես նա գանգատվում էր բոլոր բժիշկներից, որ իր քիթը մոռացել են և ձգձգում են վիրահատությունը:

— Չեն մտածում, որ դասերն սկսվել են... Ինձնից ուշ եկողներն արդեն տուն են գնում, իսկ ես...

Եվ երբ բժիշկները այցի էին գալիս մեզ, Ալբեսն իր գանգատն էր անում.

— Բա իմ քի՞թը...

— Համբերի՛ր, ա՛յ տղա,— ասում էին բժիշկները,— քո քթի հերթն էլ կգա. ինչու՞ ես շտապում:

— Բա ի՞նչ անեմ, գոնչո Գարոն վրես ծիծաղի՞։ Ընկերներից ետ եմ մնում, է՛...

Դա էր Ապրեսի միակ վիշտը։ Լավ թվանշաններով փոխադրվել էր երկրորդ դասարան, իսկ հիմա անհանգստանում էր, որ կարող է ետ մնալ։

Բայց նրան հասկանալի չէր բժշկական «բաշբըշուկը»։ Նրա մտքով չէր անցնում, որ այդ «բաշբըշուկի» տակ թաքնված է ամենամեծ ուշադրությունն ու հոգատարությունը նրա նկատմամբ, որ բժիշկները ամենայն խնամքով և զգուշությամբ նախապատրաստում էին վիրահատությունը։ Ապրեսին ձգում էր տուն, ծնողների կարոտը։ Ձգում էին դպրոցը, դասընկերները, դաշտը, փողոցը, ընդարձակությունը։ Հիվանդանոցի չորս պատերի մեջ, ձանձրալի ու տաղտուկ, Ապրեսը ինչպե՞ս ծախսեր իր հսկայական եռանդն ու էներգիան։ Եվ նա շտապում էր։ Ամբողջ օրը շրջում էր սենյակից-սենյակ, միջանցքից-միջանցք, և հավաքում օրվա նորությունները։ Ո՞վ եկավ, ո՞վ գնաց։ Ո՞ւմ են վիրահատել, ո՞վ է վիրահատել, ի՞նչ ճաշ է լինելու և այլն։ Քույրերը հաճախ չէին կարողանում որսալ նրան, որ ջերմությունը չափեին կամ նշանակված դեղը տային։ Նա այցի էր գնում նրանց, ում պետք է վիրահատեին, ապա հետաքրքրվում էր, թե իրենց ինչպես են զգում վիրահատությունից հետո։ Ապրեսը պատվաբեր չէր համարում, երբ տղաներից որևէ մեկը, մանավանդ իր հասակակիցներից, լաց էր լինում։ Նա վեճի էր բռնվում նրանց հետ, ովքեր արդարացնում էին այդ։

— Քթի օպերացիան ինչ է ո՜ր,— այդպիսի դեպքերում ասում էր նա,— լվի խայթոց...

Եվ իբրև հեղինակություն վկայակոչում էր իր տատիկին, որ ասել էր նրան, թե քթից միս հանելը շատ հեշտ բան է։

Եվ Ապրեսը մի օր դիմեց ինձ.

— Քեռի՛, դու վախենու՞մ ես։

— Ինչու՞ պիտի վախենամ,— ասացի ես,— քիթս հո չե՞ն կտրելու։

— Ես էլ չեմ վախենում, քեռի, իսկի չեմ վախենում։ Տատիկս ասում էր...

Հաջորդ օրը հերթը եկավ Ապրեսին։ Առավոտյան շուտ բուժքույրը եկավ և զգուշացրեց.

— Ապրես, տեղ չգնաս հա, հիմա գալու ենք քեզ վերև տանենք։

Վիրահատման և վիրակապման սենյակները գտնըվում էին երկրորդ հարկում։

Չերկարացնելու համար քույրերը կրճատ ասում էին «վերև», որ նշանակում էր կամ վիրահատում, կամ վիրակապում։ Ապրեսը ուրախացավ, թռչկոտեց։ Հետո կամաց-կամաց խաղաղվեց. մի տեսակ խոհական տեսք ընդունեց։ Մեկ էլ դուրս նետվեց միջանցք ու նորից ետ եկավ՝ ուրախ բացականչելով.

— Քեռի, գիտե՞ս ով է քիթս փորելու. բժիշկ Արամյանը։ Լավ բժիշկ է։ Հեչ չի ցավեցնում։

Այդ պահին դռների մեջ երևաց բուժքույրը։

Ապրեսը ուրախ հայացք գցեց վրաս ու սլացավ նրա հետևից։

Վիրահատումը երկար չտևեց։ Շուտով իմ փոքրիկ բարեկամը վերադարձավ առույգ քայլերով։ Նրա քիթը կապած էր սպիտակ վիրակապով, աչքերը քիչ պղտորված էին։

— Հը՞, ինչպե՞ս ես, բարեկամ,— հարցրի ես։

— Ա՛յ,— աջ ձեռքը բռունցք անելով և բութ մատը ցցելով՝ ասաց նա, որ նշանակում էր՝ շատ լավ եմ։

Այդ օրը Ապրեսը ոչինչ չկերավ։ Նա լուռ պառկած մնաց, աչքերը կկոցած։ Միայն հերթապահ քույրն էր, որ մերթ-մերթ անհանգստացնում էր նրան, փոխելով քթի փաթաթանը, երբ այն թրջվում, վարդի գույն էր ստանում։

Մի քանի օրից հետո Ապրեսին դուրս գրեցին։ Ուրախ հրաժեշտ տալով ինձ, ասաց.

— Քեռի՛, հեչ մի՛ վախենա, ոչի՜նչ էլ չկա...





# ԻՄ ՉԵՎԱՄՈԼ ՔՈՒՅՐԻԿԸ

*ԱՐՏԱՎԱԶԴ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

Դուք, իհարկե, Լենային չեք ճանաչում։ Ասենք, որտեղի՞ց կարող եք ճանաչել։

Լենան ինձանից մեծ է ընդամենը երկու տարով։ Այսինքն՝ նա սովորում է վեցերորդ դասարանում, իսկ ես՝ չորրորդ։

Լենան ասում է, որ ինքը գեղեցիկ է, իսկ ես նրա գեղեցկությունը չեմ տեսնում, ավելի շուտ՝ դրան ոչ մի նշանակություն չեմ տալիս։

Դե ինչպե՞ս նշանակություն տամ, երբ նա շատ սովորական աղջիկ է՝ երկար, սև հյուսքերով, դպրոցականի հագուստով, պիոներական վզկապով։ Երբ նա ժպտում է, բրոնզագույն այտերի վրա փոսիկներ են գոյանում։ Դե սա նույնպես սովորական բան է։ Ես որ ծիծաղում եմ՝ իմ այտերն էլ են փոս ընկնում։ Հայրս ու մայրս ասում են, որ փոքր ժամանակ իրենց այտերն էլ են փոս ընկել։

Ուրեմն էլ ի՞նչ հպարտանալու բան կա այստեղ։

* * *

Եվ ահա մի օր, երբ դպրոցից վերադարձա տուն, տեսնեմ քույրս և իր ընկերուհի Գայանեն սենյակում մենա՛կ են։ Քրոջս երկար մազերի փոխարեն ճակատի վրա կախված էին ինչ-որ սև մազե օղակներ...

— Այդ ի՞նչ ես արել,— զարմացած հարցրի ես։

— Խոպոպներ,— ժպտալով պատասխանեց քույրս։

— Հիմա մոդան այսպես է, Լևիկ,— ավելացրեց Գայանեն,— տես, որքա՜ն է գեղեցկացել քույրդ։

— Բոլորովին էլ չի գեղեցկացել,— ընդհատեցի ես բարկացած։— Հետո, չէ՞ որ դպրոցականին չի թույլատրվում այդպես։

— Քո գործը չէ,— հայելու առաջ պտտվելով սաստեց քույրս՝ ճակատին ու ծոծրակին թափված մազերի օղակները հարդարելով։

Դե ես ի՞նչ պետք է ասեմ։ Մեծ քույրս է, պետք է լսեմ նրան։

Տնային աշխատանքներս կատարելուց հետո վազեցի փողոց խաղալու։ Ու երբ վերադարձա տուն, ա՛յ թե նախատում էր հայրս Լենային։ Իսկ նա գլուխը կախել ու կանգնել էր սենյակի կենտրոնում։ Ինձ տեսնելով ասաց.

— Հայրի՛կ, կուզես Լևիկին հարցրու,— ապա խնդրող դարձավ ինձ.— Լևիկ, մազերիս ծայրերը չայրվեցի՞ն պլիտայի վրա։

Ես շփոթվեցի։ Լենան ինձ էր նայում աղերսական հայացքով ու կարծես ուզում էր ասել. «Պաշտպանի՛ր ինձ, Լևիկ, խնդրում եմ»։

Ես մի կողմից հպարտացա, որ քույրս դիմում է իմ օգնությանը, մյուս կողմից խղճացի նրան ու ասացի.

— Այո՛, հայրի՛կ, Լենայի մազերը այրվեցին։

Հայրս հավատա՞ց ինձ, թե՞ ոչ, չգիտեմ։ Բայց նա այլևս չխոսեց Լենայի վրա։

Այդ դեպքից հետո Լենան սկսել էր հետաքրքրվել նաև տարբեր գույնի ու ճաշակի հագուստներով։ Երբ ես վերադառնում էի դպրոցից, նա արդեն վաղուց ընկերուհիների մոտ էր։ Տուն էր վերադառնում ուշ՝ ձեռքում նորաձևությունների ամսագրեր։ Հայրս հարևանցի մի հայացք էր նետում նրա կարած շորերի վրա։

— Նշանակում է՝ դերձակություն սովորես, ավելի օգտակար կլինի, Լենա, մի բան, որ սկսել ես «երեք» ստանալ,— ասում էր հայրս։

— Թյուրիմացություն են այդ «երեք»-ները, հայրիկ,— պաշտպանվում էր քույրս։

— Իսկ այդ հագուստները թյուրիմացություն չե՞ն։

— Աղջիկս թող իր ընկերուհիներից ետ չմնա,— ասում էր մայրս,— ինչ ուզում է, թող հագնի։

Հայրս գլուխը տարուբերում էր ու անխոս հեռանում իր սենյակը։

* * *

Մի օր մեծ դասամիջոցին բարձրացա երրորդ հարկը։ Քրոջս դասարանցիները հավաքվել էին պատի թերթի մոտ ու բարձրաձայն ծիծաղում էին։ Այնտեղ էին նաև բարձր դասարանցիները, մեր դիրեկտորը, ավագ ջոկատավարը։ Ես էլ հետաքըրքըրվեցի ու մոտեցա։ Եվ ի՞նչ...



Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Պատի թերթի մի անկյունում նկարել էին քրոջս նեղ հագուստով, աչքերին թափված մազերի խոպոպներով։ Նա պարում էր «երեք»-ների հետ։ Հատակին թափված էին գրքեր, տետրեր։ Իսկ նկարի վերևը գրված էր. «Ճանաչեցե՛ք ճեմամոլին»։

— Թողե՛ք, թողե՛ք հերոսուհու եղբայրն էլ նայի,— ծիծաղելով ասաց մեկը և ինձ հրեց առաջ։

Դեմքս սկսեց այրվել, ամոթից ուզում էի լաց լինել։ Չէի կարողանում ոչ մեկին նայել։ Ետ փախա։ Նույնիսկ դուրս եկա դպրոցի շենքից, փորձեցի տուն գնալ, պատմել մայրիկին, բայց դասե՞րս...

Այսպես մտածելով վերադարձա դասարան։ Թըվաց, թե բոլորն էլ գիտեն քրոջս մասին։ Դասերի ժամանակ իմ աչքերի առջևից չէր հեռանում պատի թերթը։

Վերադարձա տուն։ Քույրս գրասեղանի առաջ՝ դասերն էր գրում։

Ես պայուսակս գցեցի սեղանի վրա ու ասացի.

— Շնորհավորում եմ...

Լենան ինձ չնայեց, ավելի շուտ՝ չէր համարձակվում նայել։ Ես այլևս չխոսեցի։ Հանկարծ քույրս դարձավ ինձ.

— Լևի՛կ։

Ես չպատասխանեցի։

— Լևի՛կ,— կրկնեց քույրս։

— Ի՞նչ է,— բարկացա ես։

— Լևի՛կ, հայրիկին չասես, լա՞վ։

— Անպայման կասեմ,— ասացի ես,— էլ ոչ մի բան չեմ թաքցնի։

— Լևի՛կ, խնդրում եմ,— ասաց քույրս ու եկավ ինձ մոտ, գրկեց ուսերս։

— Կասեմ,— նրա ձեռքերը ետ տալով՝ բարկացա ես,— դու չգիտես, թե ինչեր ասացին ինձ։ Բոլորը ծաղրում էին։

Հանկարծ քրոջս շուրթերը դողացին, արցունքները թափվեցին աչքերից։

— Լևի՛կ, խնդրում եմ,— շշնջաց նա։

Ահա թե ինչ... քույրս խնդրում է։ Երբեք նա ինձ չի խնդրել։ Միշտ ինձ փոքրի տեղ էր դնում, հաշվի չէր առնում։ Իսկ հիմա՞... Հավատա՞մ քրոջս։

Այդ մտքերի մեջ էի, երբ լսվեց հեռախոսի զանգը։

— Եթե ինձ կհարցնեն, կասես՝ տանը չի,— ասաց քույրս։

Ես վերցրի լսափողը։ Լենայի ընկերուհիներից էր։

— Լենան տանը չէ,— պատասխանեցի ես ու լսափողը դրեցի ցած։

— Սրանից հետո ով հարցնի ինձ, կասես՝ տանը չի, հասկանալի՞ է, Լևիկ։

— Հասկանալի է,— մեքենայորեն պատասխանեցի ես, թեև այնքան էլ հասկանալի չէր։

Դե ինչպե՞ս հասկանալի լինեի, երբ քույրս շատ բաներ էր խոստանում ինձ, բայց հակառակն էր կատարում։

Ես քաշվեցի իմ սենյակը, սկսեցի դասերս պատրաստել։ Չէի կարողանում կենտրոնանալ. ի՞նչ երեսով ես վաղը պետք է գնամ դպրոց, կամ ի՞նչ կլինի հետո, եթե հայրիկն ու մայրիկն իմանան...

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆ ԳՐԵՑԻ

ՄԱՆՎԵԼ ԳԱՍՊԱՐՅԱՆ

Նկ. Հ. ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Իմ անունը Սուսան է, իսկ նրանը՝ Օսան։ Ես ապրում եմ բակի մի ծայրում, իսկ Օսանը՝ մյուս այրում։ Որպեսզի ես գնամ Օսանենց տուն, նախ պետք է անցնեմ մեր հարևանի տան առջևով, որի պատուհաններին ծաղկամաններով նարինջներ կան։ Աշնանը, երբ նարինջները հասնում են, ես նայում եմ նրանց ու ափսոսանքով մտածում. «Ա՜յ թե ես էլ այդպիսի նարինջներ կունենայի...» Ճիշտն ասած, ես չգիտեմ, թե ինչ կանեի այն ժամանակ։ Իսկ հիմա ուզում եմ ձեռքս պատուհանից ներս խցկել, պոկել նարինջներից ամենալավն ու բակից դուրս թռչել։ Բայց, չգիտես ինչու, ես չեմ համարձակվում այդ անել։ Ես մեր հարևանուհուց չեմ վախենում, ես ամաչում եմ Առաքից, ի՞նչ կմտածի, եթե նա ինձ տեսնի...

Օսանն իմ մեծ ընկերուհին է։ Ճիշտ է, նա մեր դասարանից չէ, բայց ես նրան շատ եմ սիրում, որովհետև Օսանն էլ ինձ է սիրում, որովհետև Օսանն ինձ պատմում է իր բոլոր գաղտնիքները։ Մի խոսքով, Օսանը լավ աղջիկ է։ Թեպետ նա սիրուն չէ, բայց դրա փոխարեն սիրուն է նրա եղբայր Առաքը։ Դրա համար է, որ Օսանին ավելի շատ եմ սիրում։

— Օսա՜ն, Օսա՜ն...

— Այդ ո՞վ է։

Եվ Օսանից շուտ դուրս է թռչում Առաքը։

— Այդ դո՞ւ ես, Սուսի՛կ։ Օսա՛ն, Սուսիկ-փուսիկը քեզ կանչում է։

Նա միշտ այդպես է ինձ անվանում։ Առաջ դա ինձ դուր էր գալիս, իսկ հիմա...

Հիմա ես ուղղակի նրան նայել չեմ կարողանում։ Երբ լսում եմ՝ «Սուսիկ-փուսիկ, այդ դո՞ւ ես», այտերս կարմրում են ու սիրտս ուզում է կրծքիցս դուրս թռչել։

— Առա՞ք, չե՞ս ամաչում։

Բայց նա ծիծաղում է։

— Հը՞, չե՞ս ասի ռուսաց դասի տեղը։

— Չէ՛, չեմ ասի։

— Դե լա՛վ, Սուսի՛կ, դե՛...

Շեմքի վրա երևում է Օսանը։ Ինչպե՜ս կուզենայի, որ նա դուրս եկած չլիներ... Ես այդ մտքից ավելի եմ կարմրում. չլինի, նա հասկացավ, թե ես ինչ էի մտածում։

Մեր աղբյուրը բակի ծայրին է։ Որպեսզի ես գնամ ջուր բերելու, նախ պետք է անցնեմ Առաքենց տան մոտով, որի պատուհաններն աղբյուրին են նայում։ Ես այդ պատուհաններից տեսնում եմ Օսանենց տան պատի նկարները, Օսանի լուսամփոփը, Առաքի գրասեղանը։ Բայց բոլորից շատ ես ուզում եմ տեսնել Առաքին։

Այսօր, երբ աղբյուրից տուն էի վերադառնում, ճանապարհին երկու անգամ շուռ տվեցի դույլերը. պատուհանից ինձ էր նայում Առաքը։



Իմ ոտքերը կարճ են ու բարակ, իսկ իմ դույլերը լայն են ու երկար։ Ես բարշ տալով եմ դույլը տանում։ Առաջ, երբ մայրիկս ինձ ջրի էր ուղարկում, ես ծամածռում էի դեմքս, վերցնում էի դասագիրքս ու ասում.

— Ի՞նչ է, միշտ ե՞ս պիտի ջրի գնամ։

Իսկ հիմա ես ոչ ոքի չեմ թողնում ջրի գնալ։ Ճիշտ է, մայրիկս մի քիչ զարմացած է, բայց նա էլ քույրիկիս նման գոհ է։

Իմ մազերը ձիու պոչի պես ուղիղ են։ Երբ ես պարանով թռչում եմ, մազերս թրխկում են մեջքիս վրա։ Բոլորն էլ գտնում են, որ ես սիրուն չեմ։ Բայց ինձ թվում է, որ իմ քիթը բոլորովին էլ մեր դասարանցի Լենայի քթի պես սուր ու երկար չի կամ իմ աչքերն այնպես փոքրիկ ու անգույն չեն, ինչպես մեր դասարանցի Հրանուշինը։ Իսկ մի օր, մեր բնագիտության դասատուն նույնիսկ ասաց, որ ես խելացի աչքեր ունեմ։

Ես հինգերորդ դասարանցի եմ, գերազանցիկ եմ ու մեր դասարանի ավագը։

Առաջ ես այնքան էլ լավ չէի սովորում։ Իսկ

հիմա, երբ «երեք» եմ ստանում, մի տեսակ ամաչում եմ Առաքից։

Ես նստում եմ առաջին նստարանին, իսկ երկրորդ նստարանին նստում է Առաքը։ Երբ ես մեջքով նստած եմ դեպի նա, ինձ այնպես է թվում, որ Առաքը նայում է նախ օձիքիս, հետո՝ վզկապիս, ժապավեններիս, ու ես մտածում եմ. «Չլինի՞ թե վզկապս կեղտոտ է»։

Մի օր Առաքը եկավ մեր տուն ու ինձ դուրս կանչեց։ Ես անտարբեր ձևանալով դուրս եկա։

— Հը, ի՞նչ ես ուզում,— ասացի ես։

— Թվաբանության տետրը չի՞ս տա...

— Ա՛ռ, մենակ թե շուտ բեր,— ասացի ես։



Մի ժամ հետո, երբ ես տետրակս տեղավորում էի պայուսակիս մեջ, նկատեցի մի ծրար, որի վրա գրված էր. «Սիրուն Սուսան»...

Առավոտյան, երբ դասի էինք, Առաքը գրչակոթով հրեց մեջքիս ու ասաց.

— Կարդացի՞ր։

— Ի՞նչը...— ասացի ես։

— Ծրարի վրայի գրածը։

Ես կարդացել էի, բայց ձևացրի, թե ոչինչ էլ չեմ կարդացել։

— Ծրարի վրայի «Սիրուն Սուսան»— ը,— զայրացած ասաց Առաքը։

Ես փռթկացի ու գլուխս թաքցրի նստարանի տակ...

Վաղը երեկոյան Առաքի ծնունդն է։

Մեր դասարանի աղջիկները՝ Անահիտը, Կարինեն, Հրանուշը, Առաքի համար գրքեր են գնել։

Ես որոշել եմ չգնալ նրա ծննդին։ Ես ուղղակի ամաչում եմ, որովհետև եթե պարելու լինենք, Առաքը միմիայն ինձ հետ է պարելու։

Այսօր մեր տուն եկավ Առաքի ընկերը՝ Աղասը։ Նա ինձ մի երկտող բերեց. «Հրավիրում եմ Սուսաննա Դալլաքյանին իմ ծննդյան տարեդարձին։ Ս. Ս. Է»։ Ճիշտ է, ես որոշել էի չգնալ, բայց ինձ շատ հետաքրքրեց այդ «Ս. Ս. Է»-ն, և ես որոշեցի, որ միայն այս անգամ բացառություն պետք է անել։

Ես գնեցի Մարկ Տվենի «Թոմ Սոյերի արկածները» և մի շնորհավորաքարտ, որի վրա մի գեղեցիկ վարդ էր նկարված։ Ես խնդրեցի քրոջս, որ նրա հետևը մի բանաստեղծություն գրի։ Նա գրեց.

«Չունեմ ոսկի, չունեմ գանձ,
Չունեմ ոչինչ աշխարհում,
Միայն այս վարդն ունեմ ես,
Այն էլ քեզ եմ նվիրում»։

Քրոջս հորինած այս բանաստեղծությունն ինձ անչափ դուր եկավ։ Նա ինձ խոստացավ ոչ ոքի չասել, որ բանաստեղծությունն ինքն է գրել։ Իսկ ես միայն Օսանին ասացի, որ Առաքի համար բանաստեղծություն եմ գրել։

Երեկոյան, երբ շնորհավորում էինք նրա ծննդյան տասներկուերորդ տարին, Օսանը թաքուն հանեց իմ նվեր-նկարը և բարձրաձայն կարդաց։ Բոլորը ծափահարեցին, իսկ ամենից ուժեղ ծափահարեց Առաքը։ Հետո տիկին Հռիփսիմեն, Առաքի մայրիկը, հրավիրեց բոլորիս նստելու սեղանի շուրջը։ Առաքը նստեց իմ կողքին։ Ճիշտ է, ես նրա վրա զայրացա, բայց մտքումս ուրախ էի։

Երբ մեզ ոչ ոք չէր նայում, նա թեքվեց իմ ականջին ու ասաց. «Ս. Ս. Է.»։

— Ես ոչինչ չեմ հասկանում,— ասացի ես։

— Սուսանը սիրուն է,— ասաց նա,— Սուսանը բանաստեղծուհի է։

Ես զգացի, որ այտերս կարմրում են, և փախցած նայեցի շուրջս։

Այդ երեկո տիկին Հռիփսիմեն ինձ խնդրեց, որպեսզի ես արտասանեմ իմ գրած բանաստեղծություններից մեկ ուրիշը։

Ես չգիտեի ինչ անել։ Ես կուզենայի, որ գետինը պատռվեր ու կորչեի աշխարհի երեսից։

Տուն վերադարձա ուշ երեկոյան։

Մատների ծայրերի վրա անցա հայրիկիս ու մայրիկիս ննջարանով և ընկա մահճակալիս վրա։ Քույրիկս քնած էր խոր, հանգիստ քնով։ Ես նախանձեցի նրան ու մտածեցի, որ աշխարհում ամենաերջանիկ մարդը նա է...




*Երեխաներ, դուք երևի հիշում եք մեր ամսագրում տպագրված «Փարիզյան պատմություն» խորագրով պատմվածքը՝ ռևոլյուցիայի լեգենդար հերոս Կամոյի մասին։ Դուք, ըստ երևույթին, կարդացել եք նաև «Թիֆլիսյան լուսաբաց» գիրքը, որտեղից էլ վերցված էր «Փարիզյան պատմությունը»։ Եթե չեք կարդացել՝ անպայման կարդացեք։*

*Վիլ Օրջոնիկիձեն գրեց նաև մի ուրիշ գիրք երեխաների կյանքից։ Այդ գիրքը կոչվում է «Անապատի եզրի տնակը»։*

*Հենց միայն այս երկու գիրքն էլ կարողացավ գրել Վիլ Օրջոնիկիձեն։ Նրա կյանքի թելը շուտ կտրվեց, ու նա չկարողացավ իրականացնել իր բազմաթիվ մտահղացումները. իսկ նա շատ գրքեր էր ուզում գրել ձեզ համար՝ բոլորն էլ լավ, բոլորն էլ առաջինների նման հետաքրքիր։*

*Տպագրում ենք «Անապատի եզրի տնակը» գրքից մի պատմվածք։*

*ՎԻԼ ՕՐՋՈՆԻԿԻՁԵ*

*Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Առանձնապես ոչինչ չուներ նա գնելու, բացի երևակիչից ու ամրապնդող աղից։ Կուլտապրանքների ցանկացած խանութում կարելի էր ճարել դրանք, բայց Կոլյան գնաց Պետրովկա։ Նրան դուր էր գալիս այդ փողոցի վրա գտնվող խոշոր, հայելանման ապակիներով, պղնձե փայլեցրած բռնակներով, կիսամութ և դրա համար էլ մի փոքր խորհրդավոր խանութը, որը բազմաթիվ խոշորացնող և լուսանկարչական ապարատներով, մեծ ու փոքր ոսպնյակներով ինչ-որ գիտական լաբորատորիա է հիշեցնում։

Խանութում Կոլյան հանդիպեց Վիտյա Անտիպինին։

Դասարանում նրանք մտերիմ չէին։ Նստում էին տարբեր շարքերում, տարբեր օղակներում էին և տարբեր հետաքրքրություններ ունեին։ Իսկ այստեղ, ամբոխի մեջ իրար տեսնելով, ուրախացան այնպես, կարծես մեծ բարեկամներ լինեին։

— Բարև, ի՞նչ ես անում այստեղ, — հարցրեց Վիտյան։

— Հեչ, քիմիական նյութեր եմ առնում։ Ամառվանից մնացած ժապավեն ունեմ երևակելու։

— Իսկ ես ժապավեն առնելու եմ եկել, երևակիչ էլ էր պետք, բայց այստեղ այնքան հետաքրքիր բաներ կա՜ն... էքսպոնոմետր առա։

— Թանկ բան է, — գլուխն հարգանքով շարժելով և լեզուն ծպպացնելով՝ ասաց Կոլյան։

— Ի՞նչ անեմ։ Հայրիկս փող տվեց, ասաց «ա՛ռ՝ ինչ ուզում ես». ես էլ սա գնեցի։ Նույնիսկ երևակիչի փող չմնաց։

— Ես արդեն ունեմ երևակիչ, — պատրաստակամությամբ ասաց Կոլյան ու ձեռքը գրպանը տարավ, — ուզու՞մ ես տամ։

Վիտյան նայեց նրան ու համաձայնեց։

— Լավ, տու՛ր։

Կոլյան սկսեց գրպանը քրքրել։

— Սա «ԲՖ» է, սա՝ ամրացնող աղ, ահա երևակիչ... սպասիր, էլի պիտի լինի։

— Իսկ դու ե՞րբ ես ուզում երևակել, — հարցրեց Վիտյան, նայելով, թե ինչպես է Կոլյան գրպանները քրքրում։

— Երեկոյան, երբ բոլորը կգնան իրենց գործին, թե չէ մեր խոհանոցում ուրիշ ժամանակ հարմար չի։ Անընդհատ այնտեղ որևէ մեկը ցցված է լինում։

— Իսկ ժապավենը մո՞տդ է։

— Ահա՛...

— Լսիր, ուզու՞մ ես գնանք ինձ մոտ։ Ինձ մոտ հրաշալի է՝ կլաս։ Ոչ ոք չի խանգարի։ Իսկական լաբորատորիա ունեմ՝ լույսը, ջուրը մեջը։

— Ո՞նց ես գլուխ բերել։

— Մառանն եմ գրավել։ Մեր բնակարանը մեկուսացված է, և ես եմ այնտեղ տերն ու տիրականը։

— Էդ լավ է, բայց ջուրը ո՞նց ես մառանը տարել։

— Ջուրը հատուկ անց են կացրել։ Հը, գնա՞նք։

— Գնա՛նք...

Վիտյան ապրում էր մոտերքում, բարձր, նոր տան մեջ։

Փայլուն հատակով միջանցքում նրանց դիմավորեց թուխ աչքերով, ասպանդակների նման երկար, զնգզնգացող ականջօղերով մի գեր կին։

— Սա ո՞վ է, — հարցրեց կինը։ — Ես չեմ հիշում,

որ այս տղան մեր տանն եղած լինի:

— Մայրիկ, սա Կոլյա Վոինովն է, մեր դասարանից:

— Դերազանցի՞կ է:

— Լավ աշակերտ է, օղակավար:

— Լավ: Ոտներդ կարգին սրբեք ու ներս անցեք,— ասաց Վիտյայի մայրիկն ու ականջօղերը զնգզնգացնելով գնաց:

— Էդ ինչու՞ էր էդպես մանրամասն հարցնում,— մռայլ հարցրեց Կոլյան:

— Որովհետև ինձ չեն թողնում թույլերի ու ծույլերի հետ ընկերություն անել: Դրա համար էլ ես ասացի, որ դու լավ աշակերտ ես:

— Օղակավար էլ ասացիր, լա՛վ փչեցիր:

— Բա ո՛նց,— հպարտացավ Վիտյան:

Վիտյայի լաբորատորիան, իրոք, հիանալի էր: Մառանի նեղ դուռը ամբողջովին պատած էր սև մոմլաթով և դեռ վրայից էլ վարագույր էր քաշած: Փոքրիկ սեղանը դրված էր ջրածորակի կողքին, որտեղից տաշտակների մեջ բարակ շիթով հոսում էր ջուրը: Պատին սպիտակ, գեղեցիկ թարեքներ կային, որոնց վրա խնամքով դասավորված էին զանազան տեսակի բանկաներ, շշեր, սրվակներ, մանր ու մեծ տաշտակներ:

Աջ կողմում հատուկ ծալովի վահանիկի վրա դրված էին խոշորացնող ապարատը և թղթի ծրարները:

— Դե բեր լուսանկարչական ապարատդ,— ասաց Կոլյան:

— Ի՞նչ պիտի անես:

— Օբյեկտիվը հանենք:

— Ինչի՞ համար: Ես երկրորդ օբյեկտիվն ունեմ. խոշորացնողի վրա կա: Ծնունդիս օրը մորաքույրս էր բերել:

— Լա՛վ ես ապրում, եղբայր,— ծոր տվեց Կոլյան,— իսկ ապարատդ ի՞նչ տեսակի է:

— «Զորկի-երկու», բա քո՞նը:

Կոլյայի ապարատը սովորական «Սմենա» էր: Շատ հասարակ, շատ հարմար ու լավ ապարատ, բայց չգիտես ինչու նա ամաչեց Վիտյային ասել ճշմարտությունը:

— Իմն էլ է դրանից,— ասաց նա:

Վիտյան տաշտակների մեջ գոլ ջուր լցրեց:

— Լցրու քո երևակիչը: Հիմա շուտ կհալվի, ջուրը տաք է:

Նա վերցրեց ապակե հատուկ ձողիկն ու սկսեց խառնել:

— Մենակ թե, իմացիր, առաջ իմ ժապավեններ պիտի երևակենք,— հանկարծ ասաց Վիտյան:

— Էդ ինչո՞ւ քոնը:

— Ո՞նց թե՝ ինչու: Շենքն ի՞մն է...

— Հետո ի՛նչ... Ես կարող էի երեկոյան տանը երևակել:

—Բայց դա կլիներ երեկոյան... հետո՝ տաշտակնե՞րն ումն են:

— Դե միանգամից ասա ջուրն էլ է քոնը ու պրծիր: Լա՛վ, արի չվիճենք: Չէ՞ որ ես էլ կարող եմ ասել, որ քիմիական նյութերն իմն են:



Վիտյան հանկարծ բորբոքվեց.

— Դե լավ, վերցրու քո նյութերն ու գնա:

— Այ թե սիրում ես վիճել, Վիտյա: Թե իմանայի, չէի գա: Իսկ հիմա նորից ամեն ինչ հավաքելու տրամադրություն չունեմ: Ասենք, երևակիչն էլ ամբողջովին հալվել է:

Մի հինգ րոպե նրանք լուռ աշխատում էին մթության մեջ: Վիտյան երևակիչը լցրեց տակառիկի մեջ ու սկսեց ժապավենը երևակել:

— Ոչ մի դեպքում չէի գա...— փնթփնթում էր Կոլյան:

— Կարող էիր չգալ...— ժամացույցին նայելով ասաց Վիտյան:

Առաջին ժապավենը նայելիս Վիտյան հաճույքից շնչահեղձ էր լինում.

— Նայիր, տես, թե ինչքան լավ է դուրս եկել: Քիթդ մի՛ կախիր, նայիր: Ա՛յ, սա Վալերիկն է... Նրանք սեփական մեքենա ունեն: Իսկ այստեղ, տես, մեքենայից ռետինե ներքնակներ ենք հանում:— Հիանալի բաներ են. գցում ես ծովի ալիքներին ու պառկում վրան: Իսկ այստեղ Բորկան է՝ մագնիտոֆոնի հետ: Ուժեղ բան է: Տեսնու՞մ ես, թե փոքրիկ աղջիկն ինչպես է վախեցել, իր սեփա-

կան ձայնն է լսել, բա՞...

Լաբորատորիայի դուռը ծեծեցին:

— Ի՞նչ կա, — հարցրեց Վիտյան:

— Վիտյա, քո ճաշելու ժամանակն է, դուրս արի, — լսվեց Վիտյայի մոր ձայնը:

Վիտյան երևակած ժապավենը կախեց չորանալու, տակառիկի մեջ մտցրեց երկրորդն ու ձեռքերը սրբելով ասաց.

— Դե, ես գնացի ճաշելու: Դագանի նման ուտել եմ ուզում: Իսկ դու հետևիր ժամացույցին, որ ժապավենը չփչանա: Ժամացույց չունե՞ս դու, առ, վերցրու իմը: Հետո այ այս տուփից ժապավեն կհանես: Երեք հատ դեռ կա: Հերթով կերևակես, տես, զգույշ կլինես:

Վիտյան դուրս եկավ և հետևից դուռը պինդ ծածկեց, իսկ Կոլյան մնաց մթության մեջ:

Դռան հետևից ափսեների զնգզնգոց և ուրախ ձայներ էին լսվում: Խոհանոցում թշշալով ինչ-որ բան էր տապակվում:

Կոլյան երևակած ժապավենը դիտելով, աշխատում էր այդ ձայները չլսել: Ժապավենի վրա՝ ծովափին, արմավենիների մոտ, սպիտակ շոգենավի տախտակամածին ու նավերի վրա ինչ-որ կիսամերկ մարդիկ էին երևում, որոնց մեջ, իհարկե, նաև Վիտյան: Ժապավենի վերջը, երևում է, նկարվել էր ձմռանը: Արևոտ լանջի վրա կանգնած էին դահուկորդները, և Վիտյան նորից նրանց հետ էր:

Դուռը ծեծեցին:

— Ինչպե՞ս են գործերդ, քիմիկոս,—լսվեց Վիտյայի ուրախ ձայնը:—Բաց արա դուռը տեսնենք:

— Ամեն բան կարգին է,- ներս մտնելով ասաց նա:

Լաբորատորիան լցվեց ճարպի, տապակած մսի ու վանիլի հոտով:

Վիտյան լուցկու հատիկով ատամները մաքրելով, հրճվում էր:

— Լսիր, արի այս չորացածները տպենք, հետո կզբաղվենք քո ժապավենով: Հետաքրքիր է, թե ոնց կստացվեն նկարի վրա: Որտե՞ղ են թղթերը, ահա, փայլուն էլ կա, սովորաթղթով էլ: Հապա մի տուր էստեղ: Ես թուղթը կդնեմ, իսկ դու լույսը կմիացնես: Այդպես:

Կոլյան մոտեցավ խոշորացնող ապարատին:

— Միացրու: Այդպե՛ս: Եղա՛վ: Միացրու, այդպե՛ս,— կարգադրում էր Վիտյան:

Տաշտակն հետզհետե լցվում էր նկարներով: Զյունապատ անտառներին ու լեռներին փոխարինում էին լողաշորերով աղջիկները, իսկ Վիտյան հանում էր ու հանում:

Երևակիչն արդեն վատ էր աշխատում՝ դեղնել էր և, ինչ խոսք, արդեն հնարավոր չէր նրանով ժապավեն երևակել:

Կոլյան մտածեց այն մասին, որ արդեն խանութները փակում են և ինքը չի հասցնի տանից փող վերցնել և նոր երևակիչ գնել: Իսկ Վիտյայից նա երբեք փող չէր վերցնի:

— Ժամանակն է, գնամ,—վճռականորեն տեղից վեր կենալով՝ ասաց Կոլյան:

— Է՛յ, սպասիր, ի՞նչ ես անում, նկարներս կվառվեն, սպասիր՝ ծածկեմ, նոր դուռը բաց:— Վիտյան խառնվեց իրար,—սպասիր, հիմա քեզ բաց կթողնեմ: Ա՛յ, հիմա կարող ես գնալ: Իսկ վերարկուդ կգտնե՞ս, հը՞...

— Կգտնե՛մ,— ասաց Կոլյան և դուրս գալով միջանցքի՝ լիաթոք շնչեց:

— Դուռը ձախ կողմից է,— մառանից լսվեց Վիտյայի ձայնը:

— Կգտնե՛մ,—Նորից կրկնեց Կոլյան:

Նա կախարանից վերցրեց վերարկուն ու գլխարկը և առանց հագնվելու դուրս եկավ աստիճանավանդակ, դուռը հետևից ամուր զարկելով:

Հետո նա վերարկուն դանդաղ հագավ, կոճակները կոճկեց, օձիքն ուղղեց ու սկսեց ցած իջնել:

«Ինչ էլ լավ տուն է,—մտածեց նա.— բա՛րձր է ապրում Վիտկան: Ինչքա՞ն պիտի իջնի խեղճը... շա՛տ պիտի իջնի»:

Եվ Կոլյան այնպես էր նայում աստիճաններին, բազրիքին, պատերին, ինչպես նայում են այն վայրերին, ուր վերջին անգամ են լինում, ուր այլևս չեն ուզում վերադառնալ:







Այնպես եղավ, որ մեծ արտիստը տրամվայ մըտավ՝ վառվող գլանակը մատների արանքում: Դե, մոռացել էր. ի՞նչ է, հանճարը մարդ չէ՞...:

Բոլորը զիջում էին իրենց տեղը: Արտիստը մատների խաղով նստեցնում էր նրանց և ժպտում շնորհակալ: Այդ պահին ձգվում էին կնճիռները, այն հանրաճանաչ կնճիռները...որոնք Հրաչյայի մի մասն էին:

Եվ ահա՝ ազատ տեղ: Նստում է մարդը, երկար ու կապտավուն թիկնոցի փեշերը հավաքում: Աչքերի խաղաղ փայլը կլանում է փոքրիկին, որ նստած էր մոր ծնկներին՝ դիմացը: Երկուսն էլ երկար ու անթարթ նայում են: Հրաչյայի թարթիչները իջնում են: Չկարողացավ դիմանալ, գլուխը կախում է: Առաջին պարտությունը կյանքում...փոքրիկի կլորիկ աչքերը ստիպեցին:

Ու երբ մտորում էր գլխահակ, զգում էր, որ դեռ նայում է...

Բայց մանուկը տեսել էր ծուխը, որ բարակ ոլորվում էր փեշի տակից:

Հանկարծ.

— Պապի ջան, տրամվայում ծխել չի կարելի...

Կինը ակնթարթում շիկնեց ու ճչաց.

— Աշոտի՛կ:

Իսկ արտիստը...ցնցվեց:

Նա տեսավ գլանակը մատների արանքում: Զարմացավ...մռայլվեց:

«Դիտողությունը» տեղին էր: Մարդը ուժգին լարումով գնդեց կնճիռները և սկսեց դիմանալ «ահեղ» ճշմարտությանը: Մարդիկ նորից տեսան «բեմի ասպետին», բայց «ասպետի» համար խիստ դըժվար էր: Դժվար, քան բեմի վրա...

«Օ դու այնքան փոքրիկն ես, որ ներել չես կարող: Ինչպե՞ս ասեմ քեզ, մոռացել եմ, կպատահի»— ուզում էր այսպես բացատրել, բայց... ախր, Աշոտիկը չի հասկանա:

Մի քանի րոպե հետո Հրաչյան ոտքի ելավ: Նա սփռեց լայն ու կրակվող իր ժպիտը, շոյեց մանուկի գլուխը:

— Բալի՛կ, լա՛վ բալիկ:

— Մնոլհակալություն, պապի,—եղավ պատասխանը:

Հրաչյան ծիծաղեց սրտաբուխ, վարակեց մարդկանց: Ծիծաղեց մինչև վերջ...և ծիծաղի միջից նրա պայծառ դեմքին կամացուկ գծվեց մտահոգության ծանր կնճիռը:

Իջնելիս աչքի մեջ ծովացել էր արցունքի կաթիլը, իսկ շրթունքների վրա՝ սառել. «Օ, փոքրիկ մարդ»:

Իջավ ու գնաց ծանրաքայլ:

Այդպես, ասում են, հազվադեպ է ծիծաղել Հրաչյան:

Դա մեծ հոգու վերջին հաղթությունն էր, որ մնում էր խորքում, գաղտնի: Գուցե պահում էր միայն իր համար:

Ինչպե՞ս կորզեցիր մարդու նվիրական գանձը, Աշոտիկ: Այն էլ կյանքի ու բեմի հսկայից:

*ԱՐՏԱՇԵՍ ՂԱՀՐԻՅԱՆ*

# ՁՆԱԽԱՂ

Վ. ՏԱԼՅԱՆ

Քոթոթները մեր Բողարի
Իրար այսպես ասին.— Արի՛
Ձնագնդի խաղանք մի լավ…
Այսքան ձյունը իզո՞ւր եկավ:—
Իրար դիմաց դիք կանգնեցին
Եվ խաղն ուրախ սկսեցին:

Գնդիկներ են սարքում, նետում,
Հասնում, իրար պինդ խտտում.
Մեկ թավալվում ձնակոլոլ,
Մեկ փռթռկում են չորս բոլոր,
Ձյուն են լցնում քիթ ու բերան…
Մի քիչ հետո ձնում կորան:

Իսկ Բողարը՝ Քուչի՜կ, Հաչի՜կ,
Ո՞ւր ես, մանչուկ, ո՞ւր ես, աչիկ…
Մեկ էլ հանկարծ Քուչին, Հաչին
Վրա պրծան հենց մոր պոչին:

Մայրը ահով տեղից թռավ՝
Ձյան կույտն ինչպե՞ս քոթոթ դառավ:

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

# ԻՄ ՏԻԿՆԻԿԸ

ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ

Մայրս մի տիկնիկ
Գնեց ինձ համար,
Փոքրիկ, սիրունիկ,
Անունը՝ Թամար,



Մազերը՝ զանգուր,
Հագուստը՝ պուտ-պուտ,
Այտերը՝ կարմիր,
Աչքերը՝ կապույտ:

Նայում էր միշտ մեզ
Հայացքով պայծառ,
Երանի ինձ պես
Խոսել իմանար:



Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



## ԱՐԵԳԱԿԸ

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Ալիկը խաղում է պատշգամբում: Խորանարդիկներով պալատներ է կառուցում ու կամուրջներ: Հեշտ չէ կառուցելը: Շոգ է: Արևն այնպես է այրում, որ քրտինքը փոքրիկ առվակների նման թափվում է Ալիկի մազերի տակից, հոսում դեմքի վրայով: Շա՜տ շոգ է:

Եվ Ալիկը բողոքում է մայրիկին.

—Էս ի՞նչ է, է՜, փիսն է էս արևը, քարսիկ է:

—Ինչո՞ւ:

—Բա ինչո՞ւ ձմռանը չի լինում, երբ ցուրտ է: Ամռանն առանց այդ էլ շոգ է, էլի՛:



ԻԼՈՆԱ ՌԻԽՏԵՐ

Լինում է, չի լինում... այսպես էի ուզում սկսել։ Սակայն իմ պատմածը հեքիաթ չի լինելու, չէ՞ որ անապատը հեքիաթային երկիր չէ։

Քարտեզի վրա անապատը մի փոքրիկ դեղին բիծ է։ Նրա բլրակներն ու հովիտները ո՛չ անուն ունեն, ո՛չ էլ հաստատուն տեղ։ Անապատում ամեն ինչ շարժման ու փոփոխման մեջ է։ Քամու կամքով ավազից բլրակներ են առաջանում ու կրկին անհետանում։

Բայց ծառն ու կանաչը չեն հնազանդվում քամուն։ Գիհին, կեղծ ակացիան, մլենին, վայրի վարսակը, սեզն ու գայլակաթնուկը դիմադրում են քամուն։ Թփուտների մի մասը աշխատում է ամրանալ փխրուն ավազի մեջ, բայց թույլ արմատնեը անօգնական կախված են մնում օդում։



Ահա թե ինչպիսին է անապատը։ Այդպես էր նաև այն ժամանակ, երբ հայրս առաջին անգամ տարավ ինձ այնտեղ։ Ես պետք է սովորեի դիտել բնությունը։

— Բայց այստեղ ոչինչ չկա,— հիասթափված բացականչեցի ես։

— Օ ո՜չ,— ժպտալով ասաց հայրս,— դու պետք է շատ ուշադիր ու համբերատար դիտես։

Հայրս կարծես բացեց աչքերս, ես տեսա մի հետաքրքիր աշխարհ։ Ահա հենց այդ աշխարհի մասին է, որ ուզում եմ ձեզ պատմել։

Դե՛հ, եկեք, երեխաներ։ Կանչենք մեր շնիկ Մորեխին, նստենք ոլորապտույտ քամու վրա, հո՛պ, և մենք արդեն բլրակի վրա ենք։

Տեսնո՞ւմ եք այն փոքրիկ խառնարանը։ Հատակին թաքնված է մրջնառյուծը՝ հազիվ մի մատի երկարությամբ։ Այդ գորշագույն թրթուրը ագահորեն բաց է անում իր սև մկրատը և սպասում է իր զոհին։ Ուզո՞ւմ եք իմանալ ինչ է բռնում։ Իհարկե, մրջյուններ։ Անունն անգամ դրա մասին է վկայում։ Բայց մայր-բնությունն անօգնական չի թողնում մայր-մրջյունին և հսկում է մրջյունների օրորոցը։ Թեև թշնամին շատ զոհեր է տանում, այնուամենայնիվ մրջյունները պահպանվում են բավարար քանակությամբ։

Իսկ որքա՜ն համերաշխ են ապրում իրար հետ թիթեռը, գայլակաթնուկն ու մեղուները։

Գայլակաթնուկը շատ առատաձեռն է։ Նույնիսկ ամենատոթ պահերին նրա ծաղիկները նմանվում են համեղ ուտելիքներով լի սեղանի։ Հազարավոր մեղուներ են այցելում նրան։ Ծղրիդն ու մարդն էլ նույնպես ցանկալի հյուրեր են։ Իսկ իր ոսկյա վրանի ստվերի տակ ծուլորեն շարժվում է մի թրթուր։ Գայլակաթնուկը հոգում է նրա մասին, նրան սնունդ տալիս։ Իսկ թրթուրը անում է ու անում. հյուսում է իր թելը, մինչև մի օր վերափոխվում է թիթեռի։ Թիթեռը ճախրում է դեպի վեր, նստում գայլակաթնուկի ծաղիկների վրա և իր փոքրիկ ձվերը գոհարների պես կախում ոսկյա վրանից։ Գայլակաթնուկը մի քնքուշ օրորոց է և կրկին, համբերությամբ սնում է թրթուրին։ Բայց մենք դեռ շատ բան ունենք նայելու։

Իսկ այն անցքը նկատո՞ւմ եք։ Այն տանում է ուղիղ դեպի գետնասկյուռի ամրոցը։ Գետնասկյուռը հարուստ մառաններ ունի։ Որքան էլ տարին անբերրի լինի, նա երբեք կարիքի մեջ չի ապրում, քանի որ ոչ միայն հնձած արտերն է խուզարկում, այլև դեզերը թալանում։



Իսկ ներքևում, թփուտի եզրին բնակվում է դաշտային մուկը։ Նա հիացմունքով է հետևում գետնասկյուռին և հանդիպելիս, թեև սիրալիր ողջունում է, բայց և այնպես նախանձով է նայում նրա ուռած այտերին։

Բայց գետնասկյուռն էլ հարևաններ ունի, որոնց ինքն է նախանձում։ Ճագարին նախանձում է ոչ այն բանի համար, որ վտանգավոր հարևան է։ Բնավ։ Սնունդ փնտրելիս նրանք երբեք իրար չեն խանգարում։ Ճագարն ամենից շատ սիրում է փայտածյութի համ ունեցող գարնանային նուրբ ճյուղեր և ծառի հյութալի կեղև։

Գետնասկյուռն առանձնապես շատ է հարգում ճագարին, որովհետև նա շատ քաջ է և չի վախե-

# ԱՏՈՒՄ

նում մարդկանցից։ Երեկոյան, հիացմունքով լի, նա դիտում է, թե ինչպես ճագարը զգուշորեն դուրս է նայում իր տնակից և ապա կնոջ հետ գնում զբոսանքի։ Ինչպիսի՛ զգուշություն կա թաքնված նրա



ամեն մի շարժման մեջ։ Եվ ինչո՞ւ պետք է ճագարը երկչոտ լինի։ Դաշտագույն հագուստը պաշտպանում է նրան։

Իսկ աշնանը, երբ մարդիկ մեծ պայքար են սկսում ճագարների դեմ, նա իրեն իսկական հերոսի պես է պահում։ Գետնասկյուռը հաճախ դողալով նայում է բնից, թե ինչպիսի հայացքներ է գցում ճագարը մարդկանց վրա, երբ թվում է, թե այլևս փրկություն չկա։ Ճագարն ամբողջովին փոխված է լինում այդ ժամանակ։ Նա այլևս զգույշ չէ, և նրա թարթիչներից զուրկ աչքերը էլ վախեցած չեն փայլում։ Ճագարը ետ է քաշում իր երկար ականջները, ծառս լինում և, առջևի թաթը ուժգնորեն բաբախող սրտի վրա դնելով, սևեռուն հայացքով նայում թշնամուն։ Այո՛, նա իրեն իսկական հերոսի պես է պահում։



Այստեղ, ուր բլրակը դեպի հովիտն է իջնում, տեղավորվել են մի բարդի սպիտակ տատասկ ու գիհի, և տեղ-տեղ իր ճյուղերն է փռել մամխին։ Սա օազիս է անապատում։

Միշտ կանենք, եթե թփուտի մեջ մտնենք։ Կեսօր է, արևը կիզում է։ Բլրակները նմանվում են ջերմության մեջ տառապող հիվանդների, ավազը շիկացած է։

Իսկ բույսե՞րը։ Նրանք էլ են տանջվում կիզիչ արևից։ Բոլոր բույսերն էլ դեպիներս շուռ տված տերևներ ունեն, այսպիսով պահպանում են կենարար ջուրը։



Իսկ եղեռտուկը նույնիսկ չի համարձակվում զառիվայրի վրա աճել, նա ձգտում է դեպի անտառի եզրը։ Նրա կողքին ուղտափուշն է տարածվել։ Նրա փշերը պարսպի նման պահպանում են ծիրանագույն ծաղիկներ։ Մի նայեցե՛ք, որքան հպարտորեն է ուղտափուշը գլխով անում բոլին, որը փորձում է նրան սիրալիրություններ անել։

«Ջի՛, չի՛, չի՛, չի՛...» Լսո՞ւմ եք։ Ո՛չ, դա ճնճղուկ չէ։ Դա ճյուղի վրա նստած մի ճանճորս է։ Նրա փետուրներն էլ ճնճղուկի փետուրների նման են, բայց կտուցը շատ ավելի նուրբ է ու սուր։

Նա աշխուժորեն ձախ ու աջ է անում իր ուլունքանման աչիկը և ակնթարթային արագությամբ մի բան բռնում։ Փայլում է նրա կտուցը, և միջատն անհետանում է։ Կրկին հնչում է նրա դայլայլը. «Ջի՛, չի՛...»

Իսկ առավել լավ է զգում իրեն մայր կկուն։ Նա բոլորովին չի հոգում բնի և ուտելիքի մասին, այլ իր նորածին ճուտիկների համար օրորոց է ընտրում ճանճորսի բույնը։ Նա գաղտագողի ձու է դնում այնտեղ և խորթ ծնողների վրա թողնում իր ձագուկների հոգսը։ Օ՛, մայր կկուն շատ խորամանկ է։ Երբեք նրա մտքով չի անցնի՝ ձվերը կաքավի բնի մեջ դնել, քանի որ նրանք, հազիվ ձվից դուրս եկած, արագորեն տարբեր կողմեր են փախչում՝ սնունդ հայթայթելու։ Այդպիսի մի ընտանիք, անշուշտ, չի կարող օգտակար լինել կկվի անօգնական ձագուկների համար։ Սակայն կաքավներին էլ վրտանգ է սպառնում։ Ձվերը նրանք դնում են ուղիղ գետնի վրա։

Սը՜ս... ինչ-որ խշխշոց է լսվում չորացած տերևների միջից։ Դա մի փոքրիկ օձն է։ Ուշադրություն դարձրեք, թե որքան դժգոհ է նա շուրջը նայում, կարծես բարկացած երեխա լինի։ Ջարմանալու ոչինչ չկա։ Այս ժամին նա սովորաբար մի փշոտ



գունդ դարձած՝ չոր տերևների վրա քաղցր քնած է լինում: Միայն գիշերներն է նա դուրս գալիս զբոսանքի, և եթե պատահաբար լուսավորված տեղ է ընկնում, ապա շտապում է այդտեղից հեռանալ: Եթե նրան թշնամի է մոտենում, նա՜ արագորեն կծկվում է և քաջաբար սուլում. «ֆյո՜ւ—ֆյո՜ւ»:

Երբ ոզնին անցնում է պտղատու այգու միջով, նրա փշերին անպայմանորեն պտուղ է կպչում: Նա չափազանց զվարճալի տեսք է ունենում, երբ այդպես զարդարված՝ արևածագից առաջ տուն է վերադառնում: «Մրգի գող» են անվանում նրան ու հետապնդում: Բայց այդ փոքրիկը մեզ օգուտ էլ է տալիս: Նա խժռում է ամեն տեսակի վնասակար միջատներ և կատվի նման մուկ է բռնում:

Ոզնուն հեշտ կարելի է ընտելացնել, եթե մարդ բարի ու հոգատար լինի նրա նկատմամբ: Վարժվելուց հետո անմիջապես մոտ է գալիս, երբ իր անունն է լսում: Նա այլևս չի կծկվում և փշերը ցցում, այլ պառկում է մեջքի վրա և թույլ է տալիս, որ շոյեն իր կզակն ու փորիկը: Նա ոչ ոքի չի ուզում ցավ պատճառել և ծակում է միայն նրանց, ումից վախենում է:

Բնության մեջ բոլորն էլ պաշտպանվում են՝ թույլը ուժեղից, ուժեղն ավելի ուժեղից: Եվ շղթայի վերջում որպես վերջին անդամ կանգնած է մարդը: Նա չի պաշտպանվում սուր ատամներով ու մագիլներով: Բանականությունն է նրան անսահման ուժ տալիս:

Արևը մայր է մտնում: Մի անգամ ևս մեր շուրջը նայենք և հրաժեշտ տանք անապատին:

Կանաչը, ծառն ու ծաղիկը, կենդանիներն ամենուր և միշտ միևնույն են՝ բարեկամներ, որոնք սիրո, պաշտպանության և օգնության կարիք են զգում:

*Գերմաներենից թարգմ. Հ. ՔՅՈՒՓԵԼՅԱՆ*

# ԱՐՏԱՍՈՎՈՐ «ՉԵՄՊԻՈՆՆԵՐԸ»

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*





Փոթորիկը անտառում
Մեծ-մեծ ծառերը պոկել,
Դեպի բլուրը տանող
Նեղ ճանապարհն է փակել:
Հավաքվել են փոքր ու մեծ
Կենդանիները բոլոր,
Փակված ճամփի վրա, տես,
Խումբ-խումբ կանգնել են մոլոր:
Մեկ էլ եկավ փիղը մեծ,
Հաստ կնճիթը երկարեց,
Մեկ-մեկ ծառերը առավ,
Նետեց, ճամփան բաց արավ:
Եվ այդ ուժեղ կենդանին
Անուն հանեց չեմպիոնի:
Ծառի ծայրին՝ քաղցր տանձ,
Ո՛վ կբերի ճյուղից ցած:

Մարմնամարզիկ կապիկը
Իսկույն ծառն է բարձրանում,
Քաղում տանձը մեղրածոր,
Նոր ռեկորդ է սահմանում:
Չեմպիոններից ո՞վ մնաց.
Ձկնիկը՝ քաջ լողորդը,
Հեծանվորդ արջուկը,
Նապաստակը ու գորտը.
Յոթ վայրկյանում շնիկը
Կհասցնի բացիկը,
Չեմպիոն գորտն էլ, հանաք չի,
Երեք մետր կթռչի:
«Չեմպիոններին» այս բոլոր
Ողջ աշխարհն է ճանաչում,
Բայց գաղտնիքն էլ ասեմ ձեզ՝
Անփոփոխ են, չեն աճում:



*Նկ. Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

# ԱՅ ԹԵ ԻՆՉ ԲԱՆ Է ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Ռ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ







Այն, ինչ կարդալու ես հիմա, երևանյան մի հին փողոցի, մի հին դպրոցի ու մի հին պատմության մասին է։ Դեռ մինչև հիմա էլ ապրում է այդ փողոցը, բայց չկա աղ ծեծող Երեմը, որը սանդի մոտ նստած, ամեն հարվածի հետ տնքում էր ու ասում.

— Թե իմ աղը չլինի, դուք բոլորդ անհամ, անալի մարդիկ կլինեք։

Հետո չկա Հմայակի կառքը, չկան այն երկու շագանակագույն ձիերը, որ ամեն առավոտ նա լծում էր կառքին ու բղավում.

— Նյո՜։

Էլի մարդիկ չկան. չկան մեր փողոցի փոքրիկ տղաներից շատերը, նրանք մեծացան, կռիվ գնացին ու չվերադարձան, և ոչ ոք էլ չի երգում.

Ջի՛նգ-դո՛նգ, ծի՛նգ-դո՛նգ,
Սիբիրի լայն ճամփան...

Ու ես փակում եմ աչքերս. այսպես ավելի լավ է, այսպես հիշում եմ ամեն ինչ, հիշում եմ աղյուսից պատրաստված մեկ հարկանի մեր դպրոցը, հիշում եմ երգի ուսուցչուհի ընկեր Եվային։

— Հապա զույգ-զույգ կանգնե՛ք, սկսու՛մ ենք։

Եվ մենք միասին երգում էինք.

Ջի՛նգ-դո՛նգ, ծի՛նգ-դո՛նգ...

Ու տխուր երգը հնչում էր ինչպես քայլերգ՝ հաղթական, խրոխտ, և նա ասում էր.

— Չեղա՛վ, դա տխուր երգ է։

Իսկ ես միշտ էլ այդ երգը տխուր էի երգում, մի տեսակ երկարացնելով ու գլուխս խոնարհած, և չէի կարողանում ընկեր Եվային ասել, որ ես երգում եմ հենց այնպես, ինչպես ինքն է պահանջում։

— Նորի՛ց։

Ջի՛նգ-դո՛նգ, ծի՛նգ-դո՛նգ...

Երգելով մտնում էինք դասարան, տեղավորվում նստարաններին ու սպասում, իսկ նա ժպտում էր մեզ, հետո իր լիքը, կարճահասակ մարմինն օրորելով անցնում շարքերի միջով, շոյում էր մեր գլուխներն ու ասում.

— Ա՜յ թե ինչ բան է մանկությունը. տխուր երգն անգամ ձեր շուրթերին ուրախ է հնչում։

Մենք չէինք հասկանում ու զարմանում էինք, թե ինչու չպետք է երգն ուրախ հնչի։

Շաբաթ օրերը քիչ դասեր էինք անում ու ընկեր Եվայի հետ գնում էինք զբոսնելու։ Նա մեզ տանում էր քաղաքային այգի՝ աշնան տերևներ հավաքելու։ Ճանապարհին երգեր էինք երգում. երգում էինք ձկան մասին, որ լողում է վճիտ ջրում, լճակի, փիսիկի մասին, որը տատի մածունն է կերել, չվող թռչունների մասին ու «Ջի՜նգ-դո՜նգ, ծի՜նգ-դո՜նգ» երգը։ Այգին լցվում էր մեր աղմուկով, վազվզում էինք, խաղում, իսկ նա՝ սիրելի ուսուցչուհին, նստում էր թափուր նստարաններից մեկին և սպասում։ Այսպես անցնում էին օրերը, երբ պատահեց այն, ինչի մասին պատմելու եմ ես ձեզ։

Ձմեռային արձակուրդից հետո էր, դպրոց էինք եկել ու տեսանք մի նոր տղայի. փոքրամարմին, նիհար, կարկատաններով զարդարուն շալվարով։

Նրա մազերն արդեն կանոնավոր էին սանրված. մի բան, որ մեզ համար շատ նախանձելի էր, իսկ աչքերը մեծերի աչքերի նման տխուր էին։ Նա իր անունը չասաց, դասամիջոցին դուրս չեկավ բակ ու չիմացանք, թե ինչ խաղեր գիտի և կամ կարո՞ղ է արդյոք մասնակցել հարևան դասարանի դեմ մղվող ամենօրյա կռիվներին։

— Մեկն էլ ավելացավ, բայց մեզ ի՞նչ օգուտ, երևում է ո՛չ ուժեղ է և ո՛չ էլ քաջ, պարզապես կարկատած շալվարավոր է,— ասաց մեր դասարանի հրամանատարը՝ Վարդանը, որը «պարզապես» բառը գործ էր ածում ամեն առիթով ու զարմացնում էր մեզ։ Նրա մազերը չէին ենթարկվում սանրվածքին, ու դա էլ երևի պատճառ



եղավ, որ նա հենց առաջին օրից ատեց նորեկին ու մականուն կնքեց՝ «Կարկատան»։

Նորեկի մականունն ու իրեն պահելու եղանակը համընկան իրար։ Նա չէր խառնվում մեր խաղերին, դասամիջոցներին քաշվում էր մի անկյուն և գիրք էր կարդում, իսկ դասերի գալիս էր բոլորից վաղ ու բոլորից ուշ գնում դպրոցից։ Նա չէր մերվում մեզ. «կարկատանի» նման էր, օտար ու անտարբեր. և Վարդանը մի անգամ ասաց.

— Մեզանից ով էլ իր շալվարին այսքան կարկատան ունենար, պարզապես կմնար նստարանին կպած ու երբեք չէր շարժվի տեղից։

Բայց կարկատանները չէին խանգարում նորեկին, որ նա գար գրատախտակի մոտ, խնդիրներ վճռեր, դաս պատասխաներ։ Ամեն անգամ մենք հաշվում էինք նրա շալվարի կարկատանները։ Հաճախ նրանք ավելանում էին, ու կարկատանների շատանալու հետ ավելանում էր Վարդանի արհամարհական, կծող վերաբերմունքը նորեկի հանդեպ։ Երգեցողության դասերին ընկեր Եվան պահանջում էր, որ նա էլ երգի, ու նորեկը երգում էր մեզ հետ, երգում էր այնպես մեղմ, որ չէր լսվում նրա ձայնը։ Զգիտեինք՝ նա երգո՞ւմ է, թե՞ միայն շրթունքներն է շարժում։ Մի օր էլ Վարդանի առաջարկով որոշեցինք, որ երբ ընկեր Եվան պահանջի երգել, բոլորս լռենք ու լսենք «Կարկատանի» ձայնը։

Այդպես էլ եղավ, լռեցինք. իսկ նա չգիտեր մեր դավադրության մասին ու միայնակ սկսեց.

— Զի՜նգ-դո՜նգ, ծի՜նգ-դո՜նգ...

Այնպե՜ս տխուր էր ձայնը, այնքա՜ն թախիծ կար, որ ծիծաղելու փոխարեն բոլորս լռեցինք, իսկ ընկեր Եվան մտադրաց ասաց.

— Ահա թե ինչպես պետք է երգել, իսկ դուք տխուր երգը երգում եք քայլերգի նման։

Ես էլ էի այդպես երգում, բայց ոչինչ չասացի. չասացի, որ իմ նույնպես տխուր է ստացվում և եթե չի լսվում, դրանում մեղավոր է խումբը։

— Սրանից հետո՛ խումբը միայն կկրկնի «Զի՜նգ-դո՜նգ, ծի՜նգ-դո՜նգ»-ը իսկ Աշոտը կմեներգի։

«Կարկատանը» լուռ էր, անտարբեր, կարծես ոչ մի արտակարգ բան չէր պատահել։ Վարդանը չդիմացավ, բարձրացավ տեղից ու ասաց.

— Բայց չէ՞ որ, ընկեր Եվա, դուք ասացիք, որ մեր շուրթերին տխուր երգն անգամ ուրախ է հնչում և, պարզապես, դա դրանից է, որ մենք մանուկներ ենք։

— Այո՛, ես հենց այդպես էլ ասացի, բայց դա ասացի ձեզ համար, իսկ Աշոտը այն ժամանակ դեռ չէր եկել ձեր դասարանը։

Մենք բոլորս նայեցինք Աշոտի կողմը։ Փոքրամարմին, կարճահասակ այդ տղան հանկարծ տարեց թվաց, դպրոցի դռնապանից էլ տարեց։ Նա չժպտաց, չառարկեց, այլ իր թախծոտ աչքերը խոնարհեց ու էլ չերգեց։

Այդ օրվանից նրան մենք «Կարկատան» էլ չէինք ասում, և երբ պետք էր խորհրդակցել, թե ինչպես է հարմար հարձակվել հարևան դասարանի վրա, դիմում էինք Աշոտին, իսկ նա ասում էր.

— Ամենահարմարը չպատերազմելն է, եթե պետք է, ես կգնամ նրանց մոտ, կբացատրեմ, ու դուք էլ չեք կռվի։

Համաձայնվեցինք։ Մի օր էլ մեծ դասամիջոցին, երբ սովորաբար սկսվում էր պատերազմը, մենք միջանցք դուրս չելանք և Աշոտին ուղարկեցինք բանակցելու հարևան դասարանի տղաների հետ։ Նա, ի նշան խաղաղության, սպիտակ թաշկինակ վերցրեց իր հետ ու գնաց, իսկ մենք խմբվել էինք դասարանի դռների մոտ ու նայում էինք։ Նա մոտեցավ հարևան դասարանի տղաներին, ինչ-որ բան ասաց ու ցույց տվեց թաշկինակը։ Մեծ դասամիջոցն ավարտին էր մոտենում, երբ նա դուրս եկավ հարևան դասարանից, ավելի շուտ դուրս նետվեց։ Ծեծել էին, արյունոտել դեմքը, արյունոտել այն ճերմակ թաշկինակը, որ նա իր հետ տարավ որպես խաղաղության նշան։ Մենք չհանդուրժեցինք. դուրս թռանք միջանցք, մարտական ճիչերով հարձակվեցինք հարևան դասարանի տղաների վրա, ու սկսվեց համաշխարհային պատերազմը. չլսեցինք, թե երբ հնչեց դասի զանգը։

— Ո՞վ է այս բոլորի պատճառը, ո՞վ է նախաձեռնողը,— դիրեկտորը ականջի տակից նայեց մեզ ու սպասեց։ Նրա խորամանկ հայացքը կարծես ասում էր, թե ինքն արդեն գիտի մեղավորի անունը ու մեր ազնվությունն է փորձում։

Ընկեր Եվան հուզված էր, և մենք նկատում էինք այդ։

— Ուրեմն դուք չեք ուզում ասել, լա՛վ, ստիպված եմ ինքս ասել։ Է՜յ, նորեկ, ինչպե՞ս է քո անունը, կարծեմ՝ Կարկատան. այո՛, այո՛, Կարկատան։ Մի նայիր դրա մազերի սանրվածքի՜ն, թիզ ու կես հասակի՜ն ու բռնած գործի՜ն։

Դասարանում ոչ որ չծիծաղեց, թեպետ դիրեկտորը այդ բոլորն ասաց, որ մենք ծիծաղենք մեր ընկերոջ վրա։

— Ես քեզ մորաքրոջդ խնդրանքով ընդունեցի մեզ մոտ, պայմանով, որ եթե վատ բան տեսնեմ, անմիջապես հեռացնեմ դպրոցից։ Ոտքի՛ կանգնիր, լսո՞ւմ ես, ոտքի՛ կանգնիր. այդպե՛ս. իսկ հիմա վերցրու պայուսակդ ու դո՛ւրս, դո՛ւրս իմ դպրոցից։

Մենք բոլորս ոտքի կանգնեցինք, վերցրինք պայուսակներն ու պատրաստվեցինք դուրս գալ դասարանից։

— Այս ի՞նչ է,— դառնալով դեպի ընկեր Եվան՝ հարցրեց դիրեկտորը։

Ընկեր Եվան չպատասխանեց. ինքն էլ հավաքեց իր թղթերն ու լուռ դուրս եկավ դասարանից։ Դռների մոտ լսվեց նրա զուսպ հեկեկանքը, և տղաներից մեկը բղավեց ամբողջ ուժով.

— Ինչո՞ւ եք վիրավորում մեր ընկերոջը, նա անուն ունի, գեղեցիկ անուն՝ Աշոտ, ու նա ոչ մի տեղ էլ չի գնա մեր դասարանից։

Եվ այդպես էլ եղավ. նա մնաց մեզ հետ, մտերմացավ ու պատմեց իր մեռած ծնողների մասին և այն մասին, թե ինչու ինքը տխուր է երգում.

— Թե չէ. ինչո՞ւ ես էլ չպետք է ձեզ պես երգեմ։

Մերոնցից մեկը հիշում է ընկեր Եվայի խոսքերը.

— Այ թե ինչ բան է մանկությունը, տխուր երգն անգամ մեր շուրթերին ուրախ է հնչում։

Եվ մենք ծիծաղում էինք ու չէինք զգում՝ ինչպես դանդաղ, աննկատելի հրաժեշտ էինք տալիս մանկությանը, այն մանկությանը, որի շուրթերին տխուր երգն անգամ հնչում է ուրախ։



# Բայրոն



### ԽԱՂԱՂ ԼԻՆԵՐ, ԹԵ ՓՈԹՈՐԿՈՒՆ...

Ամեն օր վաղ առավոտյան, Ադրիականի կապույտ ջրերը ճեղքելով, Ս. Ղազար կղզին էր շտապում մի մակույկ: Խաղաղ լիներ ծովը, թե ալեծուփ ու փոթորկուն՝ միևնույն էր. մուգ խարտյաշ մազերով և խոհուն, արտահայտիչ աչքերով երիտասարդը մակույկ կնստեր ու համարձակ կսկսեր թիավարել:

Անծանոթը վաղուց էր գրավել իտալացիների ուշադրությունը:

— Ո՞վ է այս խիզախ երիտասարդը, որ ահ չունի նույնիսկ փոթորկված ծովից, — մի անգամ հարցրեց ձկնորս Անտոնիոն իր բարեկամներից մեկին:

— Մի՞թե դու չես լսել նրա անունը, Անտոնիո, — զարմացավ ձկնորսի բարեկամը, — ամբողջ քաղաքը նրա մասին է խոսում: Անգլիացի գրող Ջորջ Գորդոն Բայրոնն է: Նա հեռացել է իր հայրենիքից և այժմ ապրում է մեզ մոտ, Վենետիկում: Վերջերս անգլիական դատարանի վճռով նրանից խլեցին կընոջն ու աղջկան՝ փոքրիկ Ալեգրային: Այժմ նա բոլորովին մենակ է...

Վերջին խոսքերն ավելի հետաքրքրեցին ձկնորսին: Եվ իրոք, ի՞նչ էր պատահել, որ գրողը թողել էր իր հայրենիքը, զրկվել հարազատներից կամ ինչո՞ւ ամեն օր նա գնում էր Հայոց կղզին...

### ԹԵ ԻՆՉՈՒ ԲԱՅՐՈՆԸ ՀԵՌԱՑԱՎ ԻՐ ՀԱՅՐԵՆԻՔԻՑ

Անգլիայի դքսություններից մեկում, ծանր կարիքից ստիպված՝ ջուլհակները ըմբոստացան ու սկըսեցին փշրել դազգահները: Կառավարությունը զորք կենտրոնացրեց և ոտքի հանեց ոստիկաններին, որ արյան մեջ խեղդի բանվորների արդար ցասումը: Բայրոնը մի բանաստեղծություն գրեց բանվոր դասակարգի թշնամիների դեմ և, բացի այդ, կրակոտ ելույթ ունեցավ Լորդերի պալատում:

Այս նշանավոր ճառից երկու օր հետո լույս տեսան Բայրոնի «Չայլդ Հարոլդի ուխտագնացությունը» պոեմի առաջին և երկրորդ նվագները, որոնց մեջ հեղինակը խարազանում էր անգլիական իշխանավորներին: Պոեմը շատ մեծ ընդունելության արժանացավ: «Ես արթնացա մի առավոտ և ինձ գտա հռչակավոր» — գրել է Բայրոնը:

Բայց բանաստեղծի դեմ հալածանքն այնքան մեծ չափերի հասավ, որ նա 1816 թ. ստիպված եղավ հրաժեշտ տալ Անգլիային, համարելով այն «նզովյալ երկիր»: «Անգլիայի մասին մի՛ խոսեք ինձ հետ, — հետագայում գրել է Բայրոնը. — Ես չեմ ուզում նրա մասին լսել: Այնտեղ էր իմ ընտանիքը, երեխան, տունը, կալվածքը, անունը: Ամեն ինչ փոխվեց ու անհետացավ: Իմ կյանքի վերջին տասը ամենալավ տարիներից վեցը անցան այդ երկրի սահմաններից հեռու: Ես ոչ մի սեր չեմ տածում իմ երկրի նկատմամբ»:

### ԱՆԳԼԻԱՑԻ ԳՐՈՂԸ ՀԱՅԵՐԵՆ Է ՍՈՎՈՐՈՒՄ

Վենետիկի հարավային մասում ընկած Ս. Ղազար կղզում ապաստան էին գտել մի խումբ հայեր: Նրանք ունեին իրենց տպարանը և գրքեր էին հրատարակում: Մի ամբողջ ձմեռ, ամեն օր Բայրոնը մակույկով գնում էր այնտեղ հայերեն սովորելու: Նա շատ էր զարմացել, որ այդ փոքրիկ կղզում բընակվող հայերը կատարելապես տիրապետում էին եվրոպական բոլոր նշանավոր լեզուներին: Բայրոնի հայերենի ուսուցիչ Ավգերյանը մայրենի լեզվից բացի, գիտեր հունարեն, լատիներեն, եբրայերեն, ֆրանսերեն, իտալերեն, անգլերեն, հունգարերեն և գերմաներեն:

Անգլիացի գրողը թե՛ հայերեն էր սովորում և թե՛ մխիթարություն ու հանգիստ էր գտնում հյուրասեր ու գիտուն հայերի շրջանում: Նա սիրով ծանոթանում էր հայ ժողովրդի պատմությանն ու մշակույթին, հայերենից թարգմանություններ էր կատարում: Իր ուսուցչի օգնությամբ Բայրոնը կազմեց քերա-

կանության դասագրքեր ու բառարաններ՝ նպատակ ունենալով եվրոպացիներին ուսուցանել աշխարհի նինագույն ժողովուրդներից մեկի լեզուն, սեր ու հետաքրքրություն առաջացնել դեպի հայերը: «Ինչպիսին էլ եղած լինի հայերի ճակատագիրը, — իսկ դա անցյալում շատ դառն է եղել, — ինչպիսին էլ լինի նա ապագայում, նրանց երկիրը հավետ պիտի մնա որպես աշխարհի ամենահետաքրքիր երկրներից մեկը» — գրել է նա:

### ՍԻՐՏԸ ԹԱՂՎԵՑ ՀՈՒՆԱՍՏԱՆՈՒՄ, ԻՍԿ ՄԱՐՄԻՆԸ՝ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

Հայրենիքից հեռանալու առաջին իսկ օրերից Բայրոնը դարձավ եվրոպական բռնակալության դեմ ուղղված պայքարի ակտիվ մասնակից: Նա ոչ պակաս ատելությամբ էր լցված նաև դեպի օսմանյան կայսրությունը, որի լծի տակ տառապում էին Բալկանյան երկրները: Ամենից շատ Բայրոնը կարեկցում էր հույն ժողովրդին: Ահա թե ինչու, երբ պայթեց հունական հայրենասերների ապստամբությունը թուրքական բռնակալների դեմ, ըմբոստ բանաստեղծը սրտանց ողջունեց այդ ապստամբությունը և մեկնեց Հունաստան: 1824 թվականի հունվարի 22-ին Բայրոնը գրեց իր վերջին բանաստեղծությունը, որտեղ հաստատ վճռեց կռվել ու մեռնել Հունաստանի ազատության համար:

Լինի այստեղ դամբանդ թող
Քեզ զինվորի շիրիմ հարմար.
Փնտրիր անդող, գտիր քեզ հող
Եվ հանգիստ առ:

Միսսոլոնգի քաղաքի պաշտպանական մարտերում բանաստեղծը մրսեց և ծանր հիվանդացավ: «Ես Հունաստանի համար տվեցի իմ ժամանակը, դրամը, միջոցները և առողջությունը: Ավելին ի՞նչ կարող էի տալ: Այժմ տալիս եմ իմ կյանքը» — ասել է Բայրոնը մահից առաջ:

Ապրիլի 20-ին լուսաբացին թնդանոթային համազարկերով հունական զորքերը ողբացին մեծ բանաստեղծի և հույն ժողովրդի ազգային հերոսի վաղաժամ մահը. նա ընդամենը 36 տարեկան էր: Երեք օր փակ մնացին հասարակական բոլոր հիմնարկները, գործատները ու զվարճության վայրերը: Ամբողջ Հունաստանում 21 օրով հայտարարվեց համազգային սուգ:

Հույն հայրենասերների պահանջով Բայրոնի սիրտը, որ տրոփել էր իրենց երկրի ազատության համար, դրվեց մարմարե սափորի մեջ ու թաղվեց Միսսոլոնգի քաղաքում: Իսկ մարմինը տարվեց Անգլիա և թաղվեց պապերի գերեզմանոցում. կառավարությունը արգելեց նրան թաղել նշանավոր մարդկանց պանթեոնում:

* * *

Անգլիացի մեծ գրող Ջորջ Գորդոն Բայրոնի անունը հարազատ ու սիրելի է բոլոր ժողովուրդներին: Նրա ստեղծագործությունները թարգմանված են աշխարհի առաջավոր լեզուներով և բարձր գնահատականի են արժանացել:

Լրացավ մեծ գրողի ծննդյան 175 տարին:

*Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

## ՉԱՅԼԴ ՀԱՐՈԼԴԻ ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹՅՈՒՆԸ

*ՋՈՐՋ ԳՈՐԴՈՆ ԲԱՅՐՈՆ* (Հատված)

*Ջնջվա՞ծ Հելլադա, դու փառքի դամբան,*
*Դու վեհ ու անմահ, ի՜նչ փուլթ, որ ընկար,*
*Ո՞վ պիտի փշրի շղթան գերության,*
*Ո՞վ պիտի ցույց տա մի լույս ճանապարհ*
*Քո ցրված որդոց ու բախտիդ խավար.*
*Ա՜խ, վաղուց չկան ռազմիկներն արի,*
*Որ Թերմոպուլում ընկան քաջաբար.*
*Ո՞վ պիտի կանչի ոգուդ պայքարի,*
*Որ ննջում է դեռ գրկում խավարի:*
*Այստեղ ամեն բան փոխվել է արդեն,*
*Բայց նույն աչքերն են փայլում հուրհրան,*
*Պատրաստ են ասես գտնելու նորեն*
*Վաղո՜ւց կորսված լույսն ազատության:*
*Բայց ավա՜ղ, նրանք՝ և՛ ծույլ, և՛ անբան,*
*Ժառանգությունն են երազում նախնյաց*
*Եվ չեն փութորկվում՝ կռվել անվարան,*
*Որ ստրկության շղթան անիծված*
*Հավերժ թոթափեն մեջքերից ծալված:*
*Այսպես է խորհում իսկական որդին,*
*Բայց ո՞ւր է թեկուզ մի հայրենասեր.*
*Ինչո՞ւ բարբաջել նոր կռվի մասին,*
*Ինչո՞ւ անիծյալ նորտության ի սեր*
*Խաղաղությունն այս պաշտել կիսամեռ:*
*Ով բռնակալին ժպտաց քծնաբար*
*Եվ գութանն հանեց մերկ սրերից վեր,*
*Այդ ստոր մարդուն նզովք անսպառ,*
*Որ կեղծեց նախնյաց փառքն արևավառ:*
*Բայց դու վշտի մեջ չքնա՜ղ ես դարձյալ,*
*Երկիր՝ կորսված սուրբ աստվածների,*
*Դու լեռներ ունես վեհ ու ձյունափայլ,*
*Կանաչ հովիտներ ու դաշտեր բերրի:*
*Սակայն չի ծխում քանդված տաճարի*
*Խորանը կրկին, և դու անձկատ*
*Ձուլվում ես անմահ քո հերոսների*
*Ազնիվ աճյունին, բայց փառքդ անաղարտ*
*Մնում է միայն հավերժ ու հաստատ:*

*Անգլերենից թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ*



**Բաժինը վարում է**
**պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

## ՆՈՐԴ-ՕՍՏԻ ՍԱՆՁԱՀԱՐՈՒՄԸ

Երեխաներ, ձեզանից շատերը երևի լսել են Բորա կամ Նորդ-օստ փոթորկային քամու մասին, որը հաճախ մոլեգնում է Նովոռոսիյսկի շրջակայքում, արմատահան անելով դարավոր ծառերն ու հեռագրասյուները, խարըսխից պոկելով և ծով քշելով նավերը: Բորան սկիզբ է առնում Սալսկի տափաստաններում: Այստ օդային զանգվածները շարժվում են դեպի Սև ծովը: Սակայն ճանապարհին դեմ են առնում Կովկասյան լեռներին: Մնում է մի ճանապարհ՝ Նովոռոսիյսկի մոտերքում լեռնաշըղթան ճեղքող ձորը: Եվ ահա այդ ժայռոտ միջանցքով հսկայական արագությամբ սլանում է փոթորկային քամին՝ իր ճանապարհին խորտակելով ամեն ինչ:

Երկար տարիներ գիտնականները խորհում էին, թե ինչպես կարելի է սանձահարել այդ փոթորկային քամին: Շատ նախագծեր եղան, որոնք խորհուրդ էին տալիս ձորում Բորայի ճանապարհին բարձր ամբարտակ կառուցել, մյուսները առաջարկում էին լեռներում թունելներ կառուցել, որոնք դուրս կըգան դեպի ծով՝ Նովոռոսիյսկ քաղաքը շրջանցելով:

Վերջերս Քամու օգտագործման կենտրոնական լաբորատորիայի պետ Վ. Օ. Սիդորովը ստեղծեց Բորայի սանձահարման նոր նախագիծ: Նա առաջարկում է 90 կիլոմետրանոց ձորի երկայնքով կանգնեցնել հիսուն մետր տրամագիծ ունեցող հսկայական հողմային անիվներ: Հողմը պտտեցնելով անիվները, կկորցընի իր կործանիչ էներգիայի մոտ կեսից ավելին, որից հետո արդեն վտանգավոր չէ:

Մեքենաները հողմի էներգիան կվերածեն էլեկտրականության: Յուրաքանչյուր մեքենա տարեկան կտա մոտ 6000 կիլովատ էլեկտրաէներգիա, իսկ ամբողջ հողմաէլեկտրական սիստեմից կստացվի մոտ 7 միլիոն կիլովատ էժան էլեկտրաէներգիա, այնքան, որքան տալիս են Վոլգայի վրա կառուցված երեք հիդրոէլեկտրակայանները: Առաջին հողմային անիվների փորձնական նմուշներն արդեն կառուցվում են:

## ԱՆՀԵՏԱՑՈՂ

**Մոտ 130 տարի առաջ Ավստրալիայի ներքին մարզերը հետազոտող էքսպեդիցիան հանդի-**



**պեց չորացած մի անհայտ լճի գոգահովտի: Նրա ահռելի, ճեռու հորիզոնից էլ այն կողմ անցնող հատակը ծածկված էր արևի տակ**



## ԸՆՏԱՆԻ ՎԻՇԱՊՕՁԸ

*Մի ինդոնեզացի՝ Ջլորես կղզու բնակիչ, բռնել էր փոքրիկ վիշապօձ: Նրան կերակրում էր կաթով և մրգերով ու հետզհետե ընտելացնում: Այդ վիշապօձը կամ պիթոնը մեծացավ, ահագին օձ դարձավ (6 մետր երկարությամբ և 140 կիլոգրամ քաշով), բայց առաջվա պես հնազանդվում էր իր տիրոջը, նույնիսկ օգնում նրան աշխատանքի ժամանակ: Երբ միրգը կամ կոկոսի ընկույզը հասնում էր, պիթոնը բարձրանում էր ծառերի վրա և թափ էր տալիս ճյուղերը այնպես, որ տերը կարողանում էր հավաքել թափած միրգն ու ընկույզները:*

## ԲԶԵԶԸ՝ ՎԻՐԱԲՈՒՅԺԻ ԳՈՐԾԻՔ

**Ինչպե՞ս արագ և ամուր կարել վերքը: Սա վիրաբուժության ամենալուրջ խնդիրներից մեկն է: Աֆրիկայի և Կենտրոնական Ամերիկայի որոշ ցեղերի բժիշկները այդ խնդիրը հնուց ի վեր լուծում են մի յուրօրինակ ձևով՝ նրանք վերքերը կարում են բզեզի օգնությամբ:**

**Բզեզին զգուշորեն նստեցնում են թարմ վերքի ձգված եզրերին: Բզեզը ծնոտները մխրճում է երկու եզրերի մեջ, և նրան իսկույն հեռացնում են վերքից: Ընդ որում միջատի ծնոտները պոկվում և մնում են մարդու մարմնի մեջ, սեղմելով վերքի եզրերը՝ կարը դրված է: Այս բանը կրկնում են մի քանի անգամ: Երբ վերքը ձգվում է, ծնոտները հանում են և մարմնի վրա մի թեթև սպի է մնում միայն:**

## ԼԻՃԸ

կուրացուցիչ փայլող աղի հաստ շերտով:

Երկրորդ էքսպեդիցիան, որն այդ կողմերում եղավ 1860 թվականին, նույն տեղում մի հսկայական ջրամբար տեսավ: Մյուս տարի որոշվեց ուղարկել մի ջոկատ՝ լճի չափումները և նկարագիրը կատարելու համար, բայց հետազոտողներին բախտ չվիճակվեց այդ անելու. լիճը նորից անհետացել էր: Դա էլ հենց անհետացող Էյր լիճն էր, աշխարհի ամենամեծ աղի լճերից մեկը:

Այժմ այն լի է պղտոր, կանաչ գույնի ջրով, որը նրան տալիս են անձրևները ու լիճը թափվող գետերը: Այդ գետերը մշտապես չորանում են, արևի հետ միասին նրանք էլ հենց «հանցավոր» են այն բանում, որ Էյրը պարբերաբար, երեք և կես տարին մեկ անգամ «անհայտանում է»:



## ՉՎՈՂ ԹԻԹԵՌՆԵՐ

*Գոյություն ունեն չվող թիթեռներ: Նրանց մի քանի տեսակները ամեն տարի ճանապարհորդություն են կատարում Հյուսիսային Աֆրիկայից Անգլիա, Ֆինլանդիա, Իսլանդիա և դեպի ետ: Անգլիացի կենդանաբան Վիլյամսի վկայությամբ, թիթեռների երամը նման է թռչող ծաղիկների անվերջ ժապավենի: Թիթեռների շատ տեսակներ թռչում են գիշերները և լիալուսնի ժամանակ: Լավ հեռադիտակով կարելի է հետևել նրանց թռիչքին:*




## ԽԱՁԱՊՆԵՐ

Խաձապները նեգրական ցեղերից են և բնակվում են Տանգանիկայի չոր տափաստաններում, Նյարասա լճից դեպի արևելք: Ապրում են ոչ մեծ տոհմերով, որոնք մի քանի տասնյակի են հասնում: Նրանց հասակի բարձրությունը 120-140 սանտիմետրից չի անցնում: Մաշկը մուգ-դարչնագույն է, մազերը՝ սև ու գանգուր: Խաձապները սովորաբար հիմնավորվում են այնտեղ, ուր տվյալ պահին շատ հատապտուղներ ու որս կա:

Շատ հասարակ տնտեսություն ունեն խաձապները: Աղեղ, տասնյակի չափ նետ, քարե կացին ու դանակ՝ որսորդական պայուսակ, պահեստային աղեղալար, դեղամիջոց՝ օձի խայթման դեպքում գործածելու համար և ուրիշ ոչինչ. ահա նրանց ողջ կարողությունը: Ջայլամի ձվի կճեպները օգտագործում են իբրև կերակրաման: Երբեմըն կարելի է տեսնել նաև կավե ամաններ, որտեղ նետերի համար թույն են պատրաստում, բայց դրանք վերցնում են հարևան ժողովուրդներից:

Խաձապները ամենևին չեն զբաղվում ո՛չ երկրագործությամբ և ո՛չ էլ անասնապահությամբ: Բացառապես ապրում են որսորդությամբ, վայրի պտուղներով ու արմատիքներով:

Խաձապները բացի գազաններից, ձկներից, օձերից, չղջիկներից ու ցիներից, անխտիր ուտում են այն ամենը, ինչ քայլում է գետնի վրա և թռչում է օդում. այդ թվում՝ մորեխ ու կրիա, բորենի ու շնագայլ, ընձառյուծ ու կապիկ, գետաձի ու ռնգեղջյուր:

Մեծ գազանների որսի գնում են տոհմի բոլոր տղամարդիկ: Թունավոր նետերով վիրավորում են գազանին և ամբողջ խմբով հետապնդում նրան, քանի դեռ չի տապալվել գետնին: Եվ տեղնուտեղը սկսում են խժռել միսը: Խաձապների մոտ սովորույթ կա, որ կանայք չպետք է տեսնեն, թե տղամարդիկ ինչպես են ուտում: Դրա համար գազանի մարմինը բաժանում են երկու հավասար մասի: Կեսն ուտում են տղամարդիկ, իսկ մյուս կեսը տանում տուն:

Խաձապները պահուստ չեն ունենում: Օրվա հայթայթածը ուտում են նույն օրը:

# ԱԿՆՈՑԻ ՈՒԺԸ

Մ. ԴԱԼԼԱՔՅԱՆ (բժիշկ)

*Ուսուցիչներն ու ծնողները զարմացել էին Անիկի հետ տեղի ունեցած աստիճանական փոփոխության վրա։ Դասամատյանում գերազանցիկ աշակերտուհու անվան դիմաց մի շարք առարկաներից «հինգ»-երը ա-*



*ռանց «լուրջ դիմադրության» իրենց տեղերը զիջում էին «երեք»-ներին։*

*Անիկը մտատանջվում էր ու ջանում ամեն կերպ ուղղել թվանշանները, սակայն ոչինչ չէր ստացվում։ Նա, որ մի ժամանակ չմտածելով հետևանքի մասին, մորից ծածուկ, անկողնում պառկած ընթերցանությամբ գիշերներ էր լուսացնում, այժմ նույնիսկ մի էջ էլ չընթերցած՝ սարսափելի հոգնում էր և տանջվում գլխացավից ու գլխապտույտից։ Տառերը թռչկոտում էին նրա աչքերի առաջ, նա չէր կենտրոնանում և առաջվա նման անմիջապես չէր ըմբռնում կարդացածը։ Շատերն էին նկատում, որ նախկին համեստ, ընդունակ ու ջանասեր այդ աղջիկը դարձել է ցրված ու անհանգիստ և, ինչպես մայրն էր նկատում, նույնիսկ «անաշխատասեր»։*

* * *

*Բոլոր տարիների նման բժշկական հանձնաժողովը ստուգում էր դպրոցականների առողջության վիճակը։ Երբ հերթը հասավ Անիկին, թախիծը դեմքին ու ամոթխածորեն նա ներկայացավ հանձնաժողովին և կցկտուր հայտնեց իր գանգատը։*

*Բժիշկները հերթով ստուգեցին նրան։ Ստուգեց նաև ակնաբույժը։*

*— Դպրոցականի կարճատեսություն, — ասաց բժըշկուհին, ապա գրեց ու նրան մեկնեց դեղատոմսը։ Դուրս գալով բժշկի մոտից, Անիկը սրտի անսովոր բաբախումով մտավ մոտիկ դեղատունը և մեկնեց դողացող ձեռքում ամուր բռնած դեղատոմսը։*

*Ստանալով գեղեցիկ շրջանակով ակնոցը, Անիկը սլացավ տուն, դրեց ակնոցներն ու սկսեց կարդալ։ Րոպեներն հաջորդում էին իրար, անցավ կես, մեկ ժամ և ավելին, սակայն ոչ մի հոգնություն, գլխացավ կամ գլխապտույտ։*

*Անսպասելի հաջողությունից Անիկը ցնծում էր։ Ուրախությունից չգիտեր ինչ աներ։*

*Շուտով դասամատյանում նորից հպարտորեն իրենց տեղերը բազմեցին ծանրակշիռ «հինգ»-երը։*

# ՎԱՆԻՆ ՈՒ ՔԱՄԻՆ

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Երբ մայրիկը գնաց շուկա,
Ուրախացավ անչափ Վանին,
Որ տանն արդեն էլ մարդ չկա,
Ինչ ուզենա, այն էլ կանի։

Մի կողմ դրեց տետր ու մատիտ
Ու սենյակում ֆուտբոլ խաղաց,
Նկարները գցեց պատից,
Իրար խառնեց տունը խաղաղ։

— Հիմա, — ասաց, — տեսնեմ ո՞նց է
Մեր տզզանի հեծանիվը, —
Փոքրիկ քույրը դեռ չէր փորձել,
Իսկ նա ծռեց զույգ անիվը։

Բակում ծառերն օրորվեցին,
Բարձրացավ մի սաստիկ քամի,
Ինչքան տերև կար ցան ու ցիր՝
Տարավ հանեց մինչև տանիք։

Երբ տեսավ մեր խելոք Վանին
Տերևների պարը օդում,
Առավ լուցկին պատուհանից
Եվ այրեց իր տետրից մի թուղթ։

Եվ ի՞նչ փչեց խելքին, ասա.
Թուղթը նետեց պատշգամբից,
Ասաց՝ տեսնես կհանգչի՞ սա,
Թե՞ կթռչի, կանցնի ամպից։

Բայց բռնկվեց վարագույրը,
Լուսամուտին կրակն անցավ,
Այստեղ տղան գցեց գույնը,
Լեղապատառ բակ սլացավ։

Լավ էր, արագ վրա հասան
Հրշեջները մեր քաղաքի,
Թե չէ պիտի կրակն ազատ
Անցներ շուտով մյուս հարկին։

Նախատում է մայրը որդուն
Ու գանգատվում բախտից իրենց,
Իսկ չար տղան հա փնթփնթում,
Հարց է տալիս ինքը իրեն.

— Ինչո՞ւ են ինձ զուր նախատում,
Մեղավո՞ր է ախր Վանին,
Երբ կրակը չտարավ դուրս,
Այլ ներս բերեց հիմար քամին։




## ԵԿԵՔ ՆԱԽ ԾԱՆՈԹԱՆԱՆՔ

Մենք երկու հոգի ենք և մենք կախարդներ չենք։ Ճիշտ է, ցուցափայտը վարժեցնողի ձեռքում կարող է կախարդական թվալ, երբ հնազանդվելով նրա թեթև շարժումին, աղավնը սկսում է գիրք կարդալ, շունը՝ ֆուտբոլ-խաղալ, նապաստակը՝ թմբկահարել, արջուկը՝ տավիղ նվագել, իսկ խոճկորը՝ կրակել թնդանոթով։ Բայց եթե այստեղ նույնիսկ կախարդական ուժեր են թաքնված, ապա դրանք են՝ համբերությունը, համառությունը, սերը կենդանիների նկատմամբ և նրանց սովորությունների իմանալը։

Այս կախարդական ուժերը կազմում են այն բանի հիմքը, որը կոչվում է վարժեցման դուրովյան մեթոդ։ Այդ մեթոդը կոչվում է մի մարդու անունով, որը երեխաների շատ սերունդներին հայտնի է որպես Դուրով պապիկ։

Տիրապետելով նրա մեթոդին, կարելի է արտիստի վերածել ուզածդ չորքոտանուն, յուրաքանչյուր թևավորի։ Ձեզ միանգամից ամեն ինչ սովորեցնելն անհնար է։ Վարժեցման արվեստը մարդը սովորում է ամբողջ կյանքի ընթացքում և յուրաքանչյուր սանից, յուրաքանչյուր գազանիկից նա ինչ-որ նոր բան է իմանում։ Մենք ուղղակի կպատմենք, թե ինչպես պատրաստել մի քանի համարներ ձեր դպրոցի կենդանիների թատրոնի համար։

## ՇՆԵՐԸ ՖՈՒՏԲՈԼ ԵՆ ԽԱՂՈՒՄ

Այս տեսարանի համար ընտրում են տարբեր ցեղի շներ՝ բուլդոգներ, բոքսյորներ, պուդելներ և մազոտ բակային շներ։

Ամենադժվարը՝ շներին միմյանց ընտելացնելն է։ Սանձափոկերով շներին պահում են որոշ տարածության վրա և հեռվից ծանոթացնում։ Այստեղ բացի հիմնական վարժեցնողից, մասնակցում են նաև ուրիշ երեխաներ՝ վարժեցնողի ասիստենտները։ Նրանք շներին պահում են սանձափոկերից բռնած։ Վարժեցնողը կանգնում է կենտրոնում, նրա շուրջը տեղավորվում են ասիստենտները շների հետ։

Վարժեցնողի մոտ կա մի կտոր ուտելիք, որով նա շների ուշադրությունը շեղում է հնարավոր ծեծկռտուքից։ Կարևորը ուտելիքի բաշխումն է այնպես, որ այն հասնի յուրաքանչյուր շանը, որպեսզի մյուսի մեջ գազազում և նախանձ չառաջացնի։ Երբ մի քանի պարապմունքից հետո շները ընտելանում են միմյանց, կարելի է նրանց վարժեցնել գնդակի։

Վարժեցման այս էտապում պետք է յուրաքանչյուր շան հետ պարապել առանձին-առանձին։

Վոլեյբոլի գնդակը պարանով կախված է նեցուկից։ Սկզբում գնդակը քսվում է գետնին, որի տակ դրված է մսի մի փոքրիկ կտոր։ Համեղ պատառին հասնելու համար շունը պետք է քթով հրի գնդակը։ Աստիճանաբար գնդակը բարձրացնում եք վեր, իսկ գնդակի տակ կամ կողքին պահում եք մսի կտորը, որը ամրացված է ցու-



ցափայտի ծայրին այնպես, որ շունը չկարողանա նրան հասնել առանց գնդակը հրելու։

Վարժվելով այն բանին, որ գնդակը համեղ պատառի նախազգուշակն է, շունը գնդակը տեսնելուն պես իսկույն կհարձակվի նրա վրա։ Դրանից հետո պետք չէ գնդակի մոտ ուտելիք դնել։ Ուտելիքը տալիս եք շանը ձեռքով, այն բանից հետո, երբ նա հրում է գնդակը։ Շունը սկսում է մի քանի անգամ հրել գնդակը։ Նախ՝ նրա համար, որ անմիջապես չի գտնում համեղ պատառը, երկրորդ՝ նրա համար, որ գնդակով խաղալը սկսում է նրան դուր գալ։ Մեր ընտրած մազոտ շները առանց վարժեցման էլ հակված են գնդակ խաղալուն՝ որսում են, հրում, աշխատում են հասնել նետված գնդակին կամ այն բռնել օդի մեջ։

Վարժեցնողն այստեղ պետք է նրա համար, որպեսզի շանը սովորեցնի հրել գնդակը միայն քթով։ Երբ բոլոր շներն արդեն սովորել են ազատ

կերպով գնդակ խաղալ, սկսեք նրանց մարզել միասին։ Սկզբում երկուական, ապա երեք-երեք, չորս-չորս, մինչև կհասնեք ձեր խմբերի ամենավերջին շանը։

Հասկանալի է, որ խմբերում «խաղացողների» թիվը պետք է սահմանափակ լինի՝ յուրաքանչյուրում 5—6, ոչ ավելի։ Երբ խմբերը մարզված են, կոշտ գնդակը փոխարինեք գունավոր փուչիկներով։ Թեթև փուչիկը ստիպում է շներին ավելի բարձր թռիչքներ կատարել, բայց, այնուամենայնիվ, որպեսզի փուչիկը շատ հեռու չթռչի և արագ իջնի, նրա փողի ծայրում, որտեղից օդ են փչում, դրեք փոքրիկ ծանրություն (առանցքակալի գնդիկ, արճիճ, հինգ կոպեկանոց)։

Այժմ մնում է ֆուտբոլիստ-շներին վարժեցնել վարտիքների, որոնք պետք է լինեն երկու տարբեր գույների։ Այս դեպքում հանդիսատեսին ավելի հեշտ կլինի տարբերել շների երկու խմբերը։

«Մատչը» ղազարեցվում է դատավորի սուլիչով, և շները փախչում են կուլիսների հետևը։ Այս կատարվում է շնորհիվ այն բանի, որ յուրաքանչյուր խաղափորձ դուք վերջացրել եք ճաշով, որը ձեր «ֆուտբոլիստները» ստացել են կուլիսների հետևում՝ դատավորի սուլիչով։

## ԿԱՏՈՒՆ ԼԱՎ ԴԵՐԱՍԱՆ Է

Հաճախ կատվին ներկայացման մեջ տեսնելիս հանդիսականները զարմանում են ու հարցնում.

— Ասացեք խնդրեմ, դա սովորական կատո՞ւ է։

Այո, ամենասովորական կատուն շատ լավ վարժեցվում է։ Կատուն հեշտությամբ մագլցում է ծառը, տանը նա հեշտությամբ պահարանի վրայից թռչում է բուֆետի վրա, սեղանից բազմոցի վրա։

Հենց սա էլ կարելի է օգտագործել վարժեցման



ժամանակ։ Կարևոր է հասնել այն բանին, որ կատուն թռչի այնտեղ, որտեղ մենք ենք ցանկանում։

Թռիչքից հետո, իջնելով, կատուն կարող է մի քանի պիրուետներ անել, այսինքն՝ հատակին պառկած շուռումուռ գալ։ Այսպիսի շարժումներ կատուն կատարում է նաև առանց վարժեցման, երբ խաղալով, նա թաթերի մեջ է վերցնում յաթի կտոր կամ թուղթ։ Իսկ ինչպե՞ս սովորեցնել այդ շարժումները բեմի վրա, ամրապնդել վարժեցողի ուզածներով։

## ԹՌԻՉՔՆԵՐ ԱԹՈՌԱԿԻՑ ԱԹՈՌԱԿ

Աթոռակին թերությամբ դրվում է մի տախտակ, որի վրա խփված են փոքրիկ ծղախայտեր։ Դուք ստիպում եք կատվին այդ տախտակի վրայով բարձրանալ աթոռակին, նրան հրապուրելով մսի կամ ձկան մանր կտորներով։

Երկրորդ աթոռակը, որի վրա պետք է թռչի կատուն, դրեք այնպես, որպեսզի կատուն կարողանա ազատ կերպով անցնել նրա վրա։

Երբ նա անցնում է մի աթոռակից մյուսը, նրան տվեք համեղ պատառ, միաժամանակ տալով որևէ ազդանշան (ձեռքի շարժում կամ «հափ» գոչելով)։ Այնուհետև աստիճանաբար ավելացնում եք աթոռակների միջև եղած տարածությունը։ Եթե դուք ցանկանում եք, որ կատուն թռչի նաև օղակաձի միջով, ապա պետք է առաջին իսկ փորձից օղակաձը դնել աթոռակների միջև՝ սկզբում առաջին աթոռակին շատ մոտ, ապա հետզհետե հեռացնել, բայց միշտ այնպես, որ կատվին հարմար լինի ցատկել նրա միջով։



## ԿԱՏՈՒՆ ՊԻՐՈՒԵՏ Է ԱՆՈՒՄ

Որսալով այն ակնթարթը, երբ կատուն պառկած է հատակին, դուք զգուշությամբ, առանց ուժ գործադրելու նրան շրջում եք, կրկնելով «շուռ եկ» բառերը և դրանից հետո, ամեն շուռ գալիս համեղ պատառ եք պարգևում նրան։ Երբ կատուն սովորում է այն բանին, որ յուրաքան-

չյուր շուռ գալիս նրան հյուրասիրություն է սպասում, նա ինքն է սկսում պառկել կողքի վրա, սպասելով, որ դուք նրան շուռ տաք, իսկ մի քանի փորձից հետո, տեսնելով համեղ պատառը և լսելով «շուռ եկ» հրամանը, նա չսպասելով ձեր ձեռ քին, պիրուետ է անում:

## ԱՂՎԵՍԸ ՓԱԹԱԹՈՒՄ Է ԳՈՐԳԸ

Հաճախ չորքոտանի արտիստների համարները հիմնված են նրանց բնածին հատկությունների վրա: Երբ, օրինակ, վարժեցնողը սովորեցնում է խոզին բթով փաթաթել գորգը, նա օգտագործում է խոզի այն սովորությունը, երբ նա բթով փորում է գետինը՝ համեղ արմտիքներ գտնելու համար:

Աղվեսը այս համարը այլ կերպ է կատարում:

Նա պետք է գորգը փաթաթի թաթերով: Այստեղ ևս վարժեցնողը օգտագործում է աղվեսի բնածին հատկությունները: Ազատության մեջ նա փորում հանում է մանր կենդանիներ: Դուք մի կտոր միս եք դնում գորգուղու վրա և փաթաթում: Փաթեթը դնում եք հատակին: Ցուցափայտով աղվեսին բերում եք փաթեթի մոտ: Քանի որ ազատության մեջ աղվեսը թաթերով փորում է, հողը շպրտելով դեպի իրեն, դուք նրան մոտեցնում եք փաթեթի այն կողմից, որ կողմից որ փաթեթը պետք է փաթաթվի:



Մի քանի կտոր միս եք դնում փաթեթի վրա, հատակին:

Աղվեսը միսը ուտում է: Դուք կամացուկ բացում եք փաթեթը, իսկ աղվեսը ցանկանալով ավելի շուտ ստանալ մսի կտորը, սկսում է թաթերով ձեզ օգնել:

Փաթեթում մսի կտորների միջև եղած տարածությունը աստիճանաբար, փորձի ընթացքում, մեծացնում և հասցնում եք մինիմումի՝ միսը դնում եք միայն փաթեթի մեջտեղում: Այն չափով, ինչ չափով աղվեսը բացում է փաթեթը, դուք հետևում եք նրան, քայլելով գորգի վրա և աղվեսին տալով մսի կտորը:

Բացված գորգի վրա աղվեսը պետք է վալս պարի:

Վալս պարել նրան սովորեցնում եք ցուցափայտի օգնությամբ, որի ծայրին ամրացված է ուտելիքը: Աղվեսը ձգվում է դեպի համեղ պատառը և ցուցափայտի հետքով շրջան է կատարում:

Մի քանի փորձերից հետո նա կշրջվի ցուցափայտի հետքից նաև առանց համեղ պատառի (ուտելիքը դուք նրան տալիս եք հետո): Իսկ երբ համարը լրիվ ավարտված է, աղվեսը ուղղակի ցուցափայտի թեթև շարժումից պտույտներ է կատարում, կարծես վալս է պարում:

Աղվեսին գորգը փաթաթել սովորեցնելիս, դուք փոխում եք ձեր տեղը: Գորգը բացելիս դուք քայլում եք գորգի վրայով, իսկ աղվեսը փաթեթի այն կողմում է: Այժմ, ընդհակառակը, աղվեսը փաթաթելով ետ-ետ է գնում գորգի վրայով, իսկ դուք գնում եք գլորվող փաթեթի հետքերով:

Համարը հատկապես լավ է դիտվում, երբ աղվեսը կապված չէ, և իրեն ազատ է պահում բեմի վրա:



Սակայն աղվեսին պետք է վարժեցնել բեմից հեռանալ ազդանշանով:

Զանգը տալիս է ասիստենտը, բարձրացնելով վանդակի դռնակը. աղվեսը վազում է, գիտենալով, որ այնտեղ համեղ պատառ կստանա:

Ընդհանրապես աղվեսը պետք է ընտելանա վանդակին, այն համարի իր տունը:

Նա պետք է անվախ ելումուտ անի վանդակում:

Եթե աղվեսներ չկան, կարելի է օգտագործել այնպիսի շներ, որոնք բնածին հատկություն ունեն գետինը փորելու. ֆոկստերյեր, շոտլանդական տերյեր—«Սկոտչ», տաքսա: (Սրանք սովորաբար օգտագործվում են մանր կենդանիներ բներից որսալու նպատակով):

Կարելի է օգտագործել նաև պուդելներին, քանի որ նրանց նախնիների շատ սերունդներ օգնել են մարդուն գետնասնկի «որսի» ժամանակ:

Այս համարի վերջում, իհարկե, պետք չէ շանը կանչել վանդակը, այլ, զանգով նա պետք է վազի կուլիսների հետևը, ինչպես «Փուտբոլիստները» մեր առաջին համարում:

Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ

# ՍՈՎՈՐԵՆՔ դահուկային




Տ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

## ԴԱՀՈՒԿԱՎԱԶՔԸ

Դու արդեն գիտես, թե դահուկային քայլի կամ վազքի ինչպիսի եղանակներ կան: Այժմ հարկավոր է հղկել այդ եղանակները, հասնել դրանց ճիշտ կատարմանը զբոսանքների, արշավների ու մրցումների ժամանակ: Դահուկորդների մոտ ամենից տարածվածը «փոփոխական քայլն» է: Շարժումն սկսելով աջ ոտքով, այն տանում են առաջ: Որպեսզի քայլը լինի զսպանակաձև ու սահուն, ծունկը ծալում են: Նույն պահին առաջ են տանում ձախ ձեռքը (ձողափայտով): Առաջ շարժվելու համար անհրաժեշտ է հրվել ձախ ոտքով և աջ ձողափայտով: Իրանը մի փոքր թեքելով առաջ, մարմնի ծանրությունը փոխադրում են աջ ոտքի վրա և սահում աջ դահուկով: Հաջորդ պահին ձախ ոտքը մոտեցնում են աջին և առաջ տանում: Միաժամանակ առաջ է տարվում նաև աջ ձեռքը, իսկ աջ ոտքը և ձախ ձողափայտը հրում են կատարում: Այսպիսով ստացվում է շարժում: Իհարկե, առաջին պարապմունքների ժամանակ սկսնակ դահուկորդը չի կարող բոլոր շարժումները հաջող կատարել, բայց խնդիրն այն է, որ նա ճիշտ յու-




րացնի շարժման տարրերը: Փոփոխական քայլը հաստատ կերպով կատարելուց հետո կարելի է անցնել դահուկավազքին: Որոշ դահուկորդների մոտ սկզբից չի հաջողվում լավ սահել առաջ տարված դահուկով, որովհետև ցանկանում են արագ կերպով մոտեցնել մյուս ոտքը և կատարել հաջորդ քայլը: Այսպիսի շտապողականությունից քայլերը կարճ են ստացվում և դահուկները վատ են սահում: Այդպիսի դահուկորդը անտեղի ուժեր է վատնում՝ ավելորդ շարժումներ կատարում, շտապում է, բայց շարժվում է դանդաղ: Այդպիսի դահուկորդը ձողափայտերով դժվարությամբ է հրում կատարում: Փորձված դահուկորդները չեն շտապում ձողափայտը հանել ձյան միջից: Նրանք ձեռքը երկար ժամանակ պահում են հետևում և այդ դրությունից ձողափայտով վճռական հրում են կատարում:

Փոփոխական քայլից բացի, կա նաև միաժամանակյա քայլ: Այս դեպքում հրումը կատարվում է միաժամանակ երկու ձողափայտերով: Միաժամանակյա քայլն ունի մի քանի տարատեսակներ՝ միհարկանի, երկհարկանի և եռհարկանի: Միաժամանակյա քայլով սահելու դեպքում կարելի է նաև քայլեր չկատարել: Այդպես են վարվում այն ժամանակ, երբ ձյան սահունությունը լավ է և կարելի է արագ սահել միայն ձողափայտով հրում կատարելով (տես №№ 1 և 2 նկարները):



Միհարկանի քայլի ժամանակ դահուկորդը կատարում է քայլ և ձողափայտերն արագ տանում առաջ: Ապա երկու ձողափայտերով եռանդուն կերպով հրում է կատարում: Իրանը խիստ կերպով թեքվում է առաջ: Հաջորդ քայլը դահուկորդը կատարում է մյուս ոտքով: Այսպիսով, աջ և ձախ ոտքերով քայլերը կատարվում են հաջորդաբար: Ուժեղ ծանրաբեռնվածությունն ընկնում է երկու ոտքերի վրա, և դահուկորդը պահպանում է ուժերը: Երկհարկանի կամ եռհարկանի քայլերը միհարկանի քայլից տարբերվում են միայն հրման պահին նախորդող քայլերի քանակով: Քայլի այս տեսակներից դահուկորդն օգտվում է շատ հոգնած ժամանակ:

Շատ ծանոթ լինելով վազքի, վայրէջքի ու վերելքի տարրերին, անհրաժեշտ է գործնական պարապմունքների ժամանակ ամրապնդել սովորածը: Յուրաքանչյուր վարժությունը պետք է կրկնել բազմաթիվ անգամ, մինչև այն լրիվ յուրացնելը:

## ԵՐԲ ԴՈՒՐՍ ԵՍ ԵԿԵԼ ՊԱՐԱՊՄՈՒՆՔԻ

Մրցումներից առաջ կարելի է մարզվել ցանկացած պայմաններում: Ինչպիսի ձմեռ էլ լինի, կարելի է փնտրել ու գտնել ձյամբ ծածկված թեկուզ փոքրիկ տարածություն:

Սկսնակ դահուկորդները շատ հաճախ արագությունը շփոթում են շտապողականության հետ: Հենց առաջին պարապմունքներին պետք է առանց շտապելու հետևել, որպեսզի շարժումները



կատարվեն սահուն և հստակ։ Շատ կարևոր նշանակություն ունի ուժերի ճիշտ ծախսումը։ Մրցումների ժամանակ հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես մրցումների սկզբում դահուկավազքը վստահորեն գլխավորող սպորտսմենը վերջինն է մոտենում ֆինիշին։ Ինչու՞։ Որովհետև դահուկորդը ճիշտ հաշվի չի առել իր ուժերը և դահուկավազքն սկսել է շատ արագ տեմպով։

Դահուկորդը արագավազ լինելու հետ միասին պետք է լինի նաև դիմացկուն։ Սպորտսմենն այդ հատկությունը կարող է ձեռք բերել տարբեր եղանակներով։ Լավ կլինի, օրինակ, պարապմունքի ժամանակ անցնել ավելի երկար տարածություն, քան այն տարածությունը, որը հարկ կլինի հաղթահարել մրցման ժամանակ։ Իսկ ավելի




լավ է արագությունն ու դիմացկունությունը զարգացնել միաժամանակ։ Դա դժվար գործ չէ։ Պարապմունքների և զբոսանքների ժամանակ հարկավոր է երբեմն ավելացնել արագությունը հարթ տարածության վրա, վայրէջքների ու վերելքների պահին։ Ռեժիմի այդպիսի փոփոխությունն աշխուժացնում է պարապմունքը։

Լավ մարզված սպորտսմենի համար սարսափելի չէ ոչ մի տարածություն, ինչպիսի տեղ էլ այն ընկած լինի։ Մրցումների ժամանակ հաղթում է ոչ թե այն սպորտսմենը, որը լավ է տիրապետում դահուկային տեխնիկային, այլ նա, ով ֆիզիկապես լավ է նախապատրաստված։

## ՑԱՏԿ ՏՐԱՄՊԼԻՆԻՑ

Մենք խոսեցինք դահուկավազքի մասին։ Բայց դրանից բացի, գոյություն ունի նաև լեռնադահուկային սպորտ։ Դրա մեջ մտնում են սլալոմը, արագ վայրէջքը և ցատկը տրամպլինից։ Սլալոմը նորվեգական բառ է։ Այդպես են անվանում լեռն ի վայր արագ վայրէջքը, երբ դահուկորդը ընթացքի ժամանակ դրոշակներով նշված տեղերում դարձումներ է կատարում։ Սլալոմի մրցումները շատ գեղեցիկ են և գրավիչ։ Պատկերացրեք, թե ինչպես լեռնադահուկորդը ժամում 100 կիլոմետր արագությամբ վայրէջք է կատարում թեղենիս լեռան գագաթից և ճանապարհին ճարպիկ դարձումներ է կատարում՝ անցնելով դրոշակներից պատրաստված դարպասների միջով (տես № 3 նկարը)։

Սլալոմի համար գոյություն ունեն հատուկ դահուկներ, որոնք պատրաստված են ամբողջական փայտից (կաղնի)։ Դահուկի սահող մասը երիզապատված է մետաղյա թիթեղիկով։ Կան նաև փայտյա դահուկներ՝ երիզապատված պլաստմասայե թիթեղիկով։ Սլալոմի համար օգտագործվում են նաև պլաստմասայից կամ դյուրալյումինից պատրաստված դահուկներ։ Դահուկի երկարությունը պետք է ընտրել հետևյալ կերպ՝ սլալոմի համար հասակից 10—20 սանտիմետր բարձր, իսկ արագ վայրէջքի համար՝ 20—30 սանտիմետր։ Ցատկելու դահուկները սահող մակերեսի վրա պետք է ունենան երկու առվիկներ։ Այդպիսի դահուկները պիտանի են 15—20 մետր ցատկելու համար։ Իսկ սպորտային տրամպլինից ցատկելու համար դահուկները պետք է սահող մակերեսի վրա ունենան երեք առվիկներ։

Կա լեռնադահուկային մրցումների մի այլ տեսակ ևս՝ արագ վայրէջքը։ Սպորտաձևն այդպես է կոչվում, որովհետև դահուկորդից պահանջվում է միայն արագություն։ Այդպիսի մրցման համար ընտրվում է մեկ կիլոմետրից ավելի երկարություն ունեցող լեռնալանջ (անչափահասների համար), ըստ որում ստարտի և ֆինիշի միջև անկման բարձրությունը կազմում է 500 մետր, իսկ երբեմն էլ ավելի։ Դահուկորդի ճանապարհին հանդիպում են մի քանի բավական մեծ դարպասներ, որոնց միջով նա անպայման պետք է անցնի։ Արագ վայրէջքի մրցման ժամանակ դահուկորդին թվում է, թե ինքը թռչում է սավառնակով։ Չէ՞ որ լեռնադահուկորդը վայրէջք է կատարում ժամում 125 և ավելի կիլոմետր արագությամբ։

Զարմազանց հետաքրքիր են տրամպլինից ցատկելու մրցումները։ Ով ներկա է եղել այդպիսի մրցումների, նկատել է, որ սպորտսմենը ցատկելուց առաջ, հատկապես կառուցված բարձր թմբի գագաթից սահելով, մեծ արագությամբ մոտենում է տրամպլինին, ապա նոր ցատկում։ Տրամպլինները տարբեր են լինում։ Դրանցից ամենափոքրերը ուսուցողական են։ Նման տրամպլիններից



կատարած ցատկերի երկարությունը կազմում է 10—30 մետր։ Մեծ տրամպլինները նախատեսնված են 80-ից մինչև 130 մետր ցատկի համար (տես №№ 4 և 5 նկարները)։



# ԾԻՏԻԿԻ



Խոսք և երաժշտ. Ն. ԵՂԻԱԶԱՐՅԱՆԻ

Andante

Զեփյո՛ւռ, օրորի՛ր փոքրիկ ծիտիկին,
Նանա՛, ծիտի՛կ, նանա՛,
Նանա՛, ծիտի՛կ, նանա՛.
Մեղմիկ շոյիր. ծիտիկը չարթնանա,
Նանա՛, ծիտի՛կ, նանա՛:

Բուրմունքների մեջ, թռչնի՛կ իմ, ննջի՛ր.
Գարնան հովի՛կ քնքուշ,
Դու շնկշնկա՛ անուշ,
Մեղմ օրորի՛ր, ծիտիկը զովանա,
Նանա՛, ծիտի՛կ, նանա՛:





## ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

*Ուղղահայաց* — 1. Քաղաք Եգիպտոսում, 2. Գետ ՍՍՌՄ-ի հարավում, 3. Լիճ ՍՍՌՄ-ում, 5. Ասիական պետություն, որի պրեմյեր-մինիստրը կին է, 7. Քաղաք Հյուսիսային Ամերիկայում, 11. Քաղաք, որտեղ տեղի ունեցան Համաշխարհային օլիմպիական 16-րդ խաղերը, 12. Ձկնարդյունաբերության կենտրոն ՍՍՌՄ-ում, 21. Գետ ՍՍՌՄ-ի հյուսիսում, 22. Նավահանգիստ Միջերկրական ծովում, 26. Քարածխի արդյունաբերության խոշոր կենտրոն ՍՍՌՄ-ում, 27. Պետություն Եվրոպայում, 32. Ծով ՍՍՌՄ-ի Հեռավոր Արևելքում:

*Հորիզոնական* — 4. Կղզիների խումբ երկու աշխարհամասերի միջև, 8. Գետ ՍՍՌՄ-ի հյուսիսում, 9. Նավահանգիստ Չինաստանում, 13. Նավահանգիստ Տիրենյան ծովափին, 15. Լեռնաշխարհ, 17. Գետ ՍՍՌՄ-ի եվրոպական մասում, 19. Քաղաք Թուրքիայում, 23. Գետ Եվրոպայում, 24. Լիճ ՍՍՌՄ-ում, 28. Գետ Հարավային Ամերիկայում, 30. Գետ Ասիայում, 34. Պետություն, որը ՍՍՌՄ-ին սահմանակից է ծովով:

Գաղտնագիրը լուծելու համար հարկավոր է լուծված խաչբառի համարակալված փոքր շրջանակների տառերը նույնությամբ տեղադրել կենտրոնի շրջագծի համապատասխան համարներ ունեցող շրջանակներում:

Ճիշտ տեղադրելուց հետո դուք կկարդաք ռուս խոշոր ճանապարհորդի անունը:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ԿԱԶՄԵՑԵՔ ԻՆՔՆԵՐԴ

Շրջանակներում եղած 12 տառերով գտեք աշխարհագրական 12 անուններ և ինքներդ կազմեցեք խաչբառ, ըստ տրված գծագրի:

Առաջարկ՝ Կ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ



## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ 4 ՏԱՌԻՑ

Համարների մոտ նշված փոքրիկ սլաքները ցույց են տալիս, թե որ վանդակից պետք է սկսել լուծումը։ Հարցերի պատասխաններն անհրաժեշտ է. լրացնել ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ։

1. Հայկական երաժշտական հարվածային գործիք, 2. Հունգարական հանճարեղ դաշնակահար, կոմպոզիտոր, 3. Սահուն շարժումով պար, 4. Հայկական ժողովրդական երգ, 5. Ջ. Վերդիի օպերաներից, 6. Երեք ձայնի կամ երեք գործիքի համար գրված երաժշտական ստեղծագործություն, 7. Մեծ պիես մենակատար ձայնի համար, 8. Հայկական բալետ, 9. Ֆրանսիական մեծ կոմպոզիտոր, 10. Ա. Ռուբինշտեյնի ռոմանսներից, 11. «Ժիզել» բալետի հեղինակը, 12. Մ. Իպոլիտով-Իվանովի օպերաներից։




Կազմեց՝ ԱԼ. ՄԿՐՏՉՅԱՆ

## ԻՆՉՈ՞Ւ ԱՅՍՊԵՍ ԵՂԱՎ



Բոլորը դրսում սահնակ են խաղում, իսկ Նանարը պառկած է անկողնում, որովհետև...




Նրա հավատարիմ ընկերները՝ Անիկն ու Մավրիկը անհանգստացան և զանգահարեցին...



Իսկ ահա սլանում է բժշկուհի Արաքսը, որպեսզի Նանարին...



Իսկ ինչո՞ւ էր մրսել Նանարը։ Մրսել էր, որովհետև զբոսանքի ժամանակ մոռացել էր հագնել...




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 09805։ Պատվեր՝ 1876։ Տպաքանակ՝ 14300։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 7/I 1963 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

Գինը 20 կ.




# Մեր օրացույցը



## ԱՌԱՋԻՆ ԴԵԲՅՈՒՏԸ

Դա կատարվեց 1877 թ. սեպտեմբերի 5-ին, անմոռանալի, երջանիկ, հուսալի մի օր։ Այդ օրը թատրոնի ապագա վարպետը, մեծատաղանդ ռեժիսյորը առաջին անգամ բեմ պետք է դուրս գար։

Կոտիկը վաղ արթնացավ։ Նրա տրամադրությունն արտակարգ բարձր էր, անընդհատ կրկընում էր իր դերի բառերը, անհանգիստ էր, հուզված՝ թեև ներկայացումը պետք է տեղի ունենար իրենց տան մեծ դահլիճում։

Երեկոյան դահլիճը լեփ-լեցուն էր։ Այստեղ էին հավաքվել և՛ տեղի անվանի մարդիկ, և՛ Մոսկվայի շրջակայքից եկած շատ ծանոթներ։



Հանկարծ հեռվում որոտաց զինվորական հաղթական քայլերգը։ Երաժշտությունն այնքան բարձր էր, որ խոսելու հնարավորություն չկար։ Հետո տիրեց խորը լռություն։ Քայլերգի հնչյունները դադարեցին։ Կուլիսներում դերասանները զգաստացան, սկսեցին խոսել հանդարտ, նկատվում էր, որ հուզված են։

Բայց ահա դանդաղորեն բացվեց վարագույրը, ներկայացումն սկսվեց։ Քիչ հետո բեմ դուրս եկավ նաև փոքրիկ Կոնստանտինը։ Նա շատ ոգևորված էր և յուրաքանչյուր շարժման, դիալոգի միջոցով հանդես էր բերում իր անվիճելի տաղանդը։

Բեմադրությունը վերջացավ։ Թվում էր, թե տղային խրախուսանքի ու գովեստի խոսքեր պետք է ասվեին, բայց բոլորը լռում էին, իսկ ռեժիսյորը միայն ասաց.

«Ոչինչ, հաճելի էր, Կոտիկ»։

14-ամյա պատանին այդ օրվանից կարծես է՛լ ավելի խորը համոզվեց, որ պետք է դերասան դառնա։ Դրանից հետո նա սկսեց է՛լ ավելի քրտնաջան աշխատել իր տաղանդը կատարելագործելու, արվեստին ավելի խորը տիրապետելու համար։ Հետագայում Կոնստանտին Ստանիսլավսկին դարձավ ռուսական ռեալիստական թատրոնի հիմնադիրներից մեկը։ Նա իր ստեղծագործական աշխատանքի հիմքը համարում էր կյանքի ռեալ և ճշմարտացի արտացոլումը։ 1888 թվականին ռեժիսյոր ու դրամատուրգ Ֆեդոտովի և անվանի նկարիչ Սոլոգուբի օգնությամբ Ստանիսլավսկին ստեղծեց արվեստի և գրականության ընկերություն, որը կարևոր դեր խաղաց նրա ստեղծագործական կյանքում։ Ստանիսլավսկու հետագա գործունեությունը կապված է Մոսկվայի Գեղարվեստական ակադեմիական թատրոնի հետ, որը հիմնադրվեց 1897 թ. իր և նշանավոր թատերական գործիչ Նեմիրովիչ-Դանչենկոյի ջանքերով։

Լրացավ մեծ արվեստագետի ծննդյան 100-ամյակը։

## ՅՈՒԼԻՈՒՍ ՖՈՒՉԻԿ

*«Ես սիրել եմ կյանքը և նրա համար եմ պայքարի ելել։ Ես սիրում եմ Ձեզ, մարդի՛կ, և երջանկացել եմ, երբ դուք ինձ պատասխանել եք երջանկությամբ... Թող իմ անունը ոչ ոքի մոտ տխրություն չառաջացնի։ Դա իմ պատգամն է Ձեզ, հայրի՛կ, մայրի՛կ, քույրե՛ր... և ձեզ՝ ընկերնե՛ր, բոլորին՝ ում սիրել եմ։ Ես ապրել եմ երջանիկ կյանքի համար և մեռնում եմ հանուն այդ կյանքի»։*

*Այս խոսքերը նա գրեց մահապատժից առաջ, իսկ երբ տարան ի կատար ածելու դաժան վճիռը, նա բարձրաձայն երգեց «Ինտերնացիոնալը»։ Նա մեռավ գլուխը բարձր պահած, մեռավ խորը գիտակցելով, որ երիտասարդ կյանքը զոհում է մարդկանց երջանկության համար։ Այդպիսին էր Յուլիուս Ֆուչիկը, չեխ ժողովրդի հերոսական զավակը։*

*Գրող, հրապարակախոս և ռեվոլյուցիոն գործիչ էր Ֆուչիկը։ Նա բազմաթիվ գործեր է գրել՝ քաղաքական ու քննադատական հոդվածներ, գրախոսականներ ու օրագրեր, բայց նրա ամենանշանավոր ստեղծագործությունը դա «Խոսք մահապատժից առաջ» գիրքն է։ Չի կարելի առանց հուզմունքի կարդալ այդ գործը։ Երբ կարդում ես գրքի էջերը, քո առաջ է բարձրանում Ֆուչիկը՝ կախաղանի օղակը պարանոցին։ Դու տեսնում ես, թե ինչպես են դահիճները պատրաստվում մի հարվածով հեռացնելու նրա ոտների տակի հենարանը, բայց նա խոսում է ջերմորեն, ամբողջ հոգին դնելով իր խոսքերի մեջ։ Դու զգում ես, թե որքան է այդ մարդը սիրում քեզ, քեզ նման միլիոններին։ Ահա թե ինչու մարդիկ չեն մոռանում նրան և իրենց սրտերում խորն են պահում լեգենդար հերոսի հիշատակը։*

*Լրացավ Յուլիուս Ֆուչիկի ծննդյան 60 տարին։*

77806


ԿՆՃԻԹԱՎՈՐ
ՖՈՒՏԲՈԼԻՍՏԸ
ՀՐԱՇԱԼԻ


ՁԵՌՔԸ ՎՆԱՍԵՑ ՈՏՔՈՎ
Է՛, ՈՏՆ ԷԼ ՎՆԱՍԵՑ


ՍԱ ԱՐԴԵՆ՝ ԳՈԼ Է
ԲՌՆԵՑ